1916 № 5.—Յունուարի 24 ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 րուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ. Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների և հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր.։ Արտասահման՝ տարեկան 5 ր. կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ**՝ Թիֆլիս, Արտաշրադեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Փոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ**՝ տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։

Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են մէկ ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների աթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։



ԿՈՎԿԱՍԻ ՆԱԽԿԻՆ ՓՈԽԱՐՔԱՅ ԿՈՄՍ Ի. Ի. ՎՈՐՈՆՑՈՎ-ԴԱՇԿՈՎ Կ. Հ. Բ. Ը-ԹԵԱՆ ՊԱՏՈՒԱՒՈՐ ԱՆԴԱՄ

*† 15 յունուարի 1915 թ.*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ԵՐԿՈՒ ՍԿԶԲՈՒՆՔ

Ներկայ անօրինակ պատերազմը համամարդկային մեծ նշանակութիւն պիտի ունենայ։ Հեռու է արդեօք նրա վերջը թէ մօտիկ—չեն կարող ասել նոյն իսկ և կռուողները. բայց որ այդ վերջը վճռական և անդառնալի ազդեցութիւն պիտի ունենայ երկրագնդի բոլոր ազգաբնակութեան համար,—այդ պարզ նկատւում է և այժմից։ Միլիոնաւոր մարդկանց դիակները, տասնեակ և հարիւրաւոր միլիարդներով հաշուող պատերազմական ծախքերը միայն կռուող ազգերի քաղաքական դրութեան հարցը չեն շօշափում։ Անկախ այդ մեծ խնդիրներից, պատերազմի ելքը պիտի վերջնականապէս որոշէ և այն արժէքների բախտը, որ մշակել ու հաստատել է մարդկութիւնը հազարաւոր տարիների ընթացքում, արժէքներ, առանց որոնց չէ կարող լինել մարդկային կեանք։

Դրուած է բարոյականութեան հարցը։ Այն էլ ոչ միայն հաւաքական բարոյականութեան, ազգերի բարոյականութեան, այլ և անհատական բարոյականութեան, իւրաքանչիւր առանձին մարդու բարոյականութեան հարցը։

Կենդանական աշխարհում գոյութիւն ունի մի օրէնք միայն—ոյժի օրէնքը։ Նրա իմաստով ամեն ինչ, որ ոյժ չունի, ամեն ինչ, որ թոյլ է դիմացինի առաջ, պիտի ոչնչանայ, պիտի ուժեղի որսը դառնայ։ Սա գազանական սկզբունքն է։ Եւ մարդկութիւնը, իբրև կենդանական աշխարհի մի ցեղ, հնագոյն ժամանակներից, իր վայրենութեան ամենահեռաւոր խորքերից, գործադրում էր այդ օրէնքը, նրանով էր ապրում։ Բայց այդ գազանային անողոք ու մահացուցիչ դաւանանքի կողքին դարերի ընթացքում զարգանում ու թևաւորւում է նրա հակառակ, նրան բացասող մի այլ սկզբունք—մարդկայնութիւն։ Սա բարձրացնում է տկարի, թոյլ պաշտպանուածի դատը, ոյժի իրաւունքը հրատարակում է միայն անրան գազանին վայել։ Մարդկայնութեան գաղափարի համար մարտընչել են բոլոր մեծագոյն մտածողները, բոլոր օրէնսդիրները ամենախորին հնութիւնից սկսած։ Մարդ կոչումը արդէն մի իրաւունք է, որ պաշտպանում է թոյլին ու խեղճին, որ բարձրացնում է բոլոր փոքրերին մինչև համահաւասարութիւն, մինչև եղբայրութիւն։ Այս սկզբունքի վրայ է հիմնաւորուած և քրիստոնէութիւնը։ Այս սկզբունքով է ապրել եւրոպական լուսաւորութիւնը։ Վերջապէս այս սկզբունքը յաղթական նշանաբան, նուիրական դաւանանք է դարձել ֆրանսական մեծ յեղափոխութիւնից սկսած։

Ներկայ պատերազմի մէջ այս երկու սկզբունքներն են կռւում։ Ֆրանսական զօրքը,—ասում էր ֆրանսիացի մի նշանաւոր գիտնական,—այսօր էլ կռւում է մեծ յեղափոխութեան գաղափարների համար—ազատութիւն, եղբայրութիւն, հաւասարութիւն։ Ֆրանսական բանակի հետ, նշանակում է, նոյն մարդկայնական դրօշակի տակ կռւում են և նրա դաշնակիցները—Անգլիա, Ռուսաստան, Իտալիա, հերոսական Բելգիան, Սերբիան։

Միւս կողմը—ոյժի իրաւունքի ներկայացուցիչն է։ Գերմանիան, մեծ հումանիստների և փիլիսոփաների հայրենիքը, ընկնելով Պրուսիայի գերիշխանութեան տակ, սկսեց զարգացնել և անհնարին չափերի հասցնել կոպիտ, ոչնչացնող ոյժի պաշտամունքը։ «Երկաթի և արեան քաղաքականութիւն», «զրահաւորուած բռունցքի աւետարան»—ահա ինչ սարսափելի անուններ կերտուեցին Գերմանիայում՝ ոյժի իրաւունքը պաշտելու համար։ Եսամոլութեան, հաշուի, ամենակոպիտ նիւթապաշտութեան աստուածացումն է այդ։ Եւ պետական այդ իմաստութեան համընթաց էր ամբողջ գերմանական գիտութիւնը։ Նիցշէի գերմարդը, որին միայն պատկանում է ապրելու իրաւունքը, մինչդեռ թոյլը պիտի ոչնչանայ, նոյն այդ եսամոլ-գազանային աշխարհայեացքի փիլիսոփայութիւնն է։ Նշանաւոր իրաւագէնները տասնեակ տարիներ դատափարակում էին հասարակութիւնը այն մտքով, թէ պետութեան օգուտների համար կարելի է և պէտք է ոտնակոխ անել դաշնագրութիւնները, չը յարգել չէզոքութիւնը, և այլն և այլն։ Պատահական մի բան չէ, ի հարկէ, որ այսօր քրիստոնեայ, բարձր կուլտուրայի տէր և գիտուն Գերմանիայի հետ դաշնակից է Թիւրքիան, մի պետութիւն, որ թէև 500 տարի ապրում է եւրոպական հողի վրայ, թէև պարլամենտական երկիր է, բայց մնացել է միջին-ասիական գազանային պաշտամունքի հարազատ ներկայացուցիչ և նրա ամբողջ պատմութեան մէջ բառիս բուն նշանակութեամբ մի հատ թել չէք գտնի, որ մարդկայնութեան գոյն ունենար։

Ուժեղ լինելու համար պէտք է ոչ մի միջոց վատ

չընամարել։ Եւ միջազգային անբարոյականութեան զարհուրելի փաստեր տեսաւ աշխարհը.— Բելգիայի չէզոքութեան դաշնագիրը յայտարարուեց թղթի մի անմիտ պատառ, ռումբերի կերակուր դարձրին կուլտուրայի հրաշակերտները, երկնքից կրակ թափեցին խաղաղ բնակիչների գլխին, կին ու երեխայ կոտորեցին, նաւեր ջրասոյզ արին և նրանց հետ հազարաւոր անմեղ մարդանց ու երեխաների։ Վերջապէս, ամենազարհուրելին, պատմութեան մէջ չեղածը, չըտեսնուածը—հարիւր հազարներով հայեր կոտորելը, որոնց արեան հեղեղը պէտք է ծանրանայ Վիլհելմ կայսրի խղճի վրայ և Գերմանիայի պատմութեան ամենաանպատիւ էջերը պիտի կազմէ։

Բարոյականութիւնը միայն անհատների համար չէ, այլ և ազգերի։ Բուլղարիան տեղերքը սասանեցրեց իր սև ապերախտութեամբ Ռուսաստանի դէմ։ 1912 թուին Ֆերդինանդ թագաւորը, պատերազմ յայտարարելով Թիւրքիայի դէմ, գրում էր թէ դա խաչի պատերազմն է մահիկի դէմ։ Իսկ այսօր նա եղբայրացած է նոյն այդ մահիկի հետ։ Կարելի պիտի լինէր սպասել, որ գոնէ նուիրական հասկացողութիւնները կը խնայուեն անբարոյական արարքների մէջ... Իսկ Յունաստանը, որ վատաբար դաւաճանեց Սերբիային...

Այսպէս է ոյժի իրաւունքը գրկածների աշխարհը։ Իսկ միւս կողմը, մարդկայնութեան կողմը՝—Ահա մի Բելգիա, պարտքի, ազնուութեան, պատուի նահատակ։ Ահա մի Սերբիա, որ զրկուեց ամեն ինչից, բայց չըդաւաճանեց իր դաշնակիցներին։

Այս երկու սկզբունքներից ո՞րը կը յաղթէ։—Ապագայ մարդկութեան երջանկութիւնը այս հարցից է կախուած։ Համաշխարհային պատմութիւնը երկունքի մէջ է...

Մենք, հայերս, միշտ մի թոյլ ազգ ենք եղել և միշտ էլ նահատակուել ենք թոյլի, փոքրի իրաւունքների, այսինքն մարդկայնութեան համար։

Եւ կարիք կա՞յ ասելու, թէ ո՛ւմ կողմը կարող է լինել հայ ազգի համակրանքը...

# Ներքին տեսութիւն

## ԿՈՄՍ Ի. Ի. ՎՈՐՈՆՑՈՎ-ԴԱՇԿՈՎ

Կովկասի նախորդ Փոխարքայ կոմս Վորոնցով-Դաշկովը վախճանուեց այս յունուարի 15-ին՝ 78 տարեկան հասակում, իր կալուածքում, Սև ծովի ափին, Ղրիմի Ալուպկա քաղաքում։

Կոմս Վորոնցով-Դաշկովը իրաւամբ համարւում էր Ռուսաստանի ամենախոշոր պետական դէմքերից մէկը։

Հարկաւոր ենք համարում տալ ամփոփ տեղեկութիւններ նրա կենսագրութեան և գործունէութեան մասին։

Կոմսը պատկանում էր ռուսաց ամենահին և յայտնի ազնուականների տոհմերից մէկին. ծնուել է 27 մայիսի 1838 թ.։ Տասն և ութ տարեկան հասակում մտել է Մոսկուայի համալսարանի իրաւաբանական բաժինը, բայց չաւարտած անցել է զինուորական ծառայութեան։

60-ական թուականների սկզբում նա զինուորական պաշտօնով նշանակուել է Հիւսիսային Կովկաս, ուր մասնակցել է չէչէնների դէմ մղուող կռիւներում. յետոյ մասնակցել է Թուրքեստանի արշաւանքներին։

Իսկ 1877 թ., երբ ծագեց ռուս-տաճկական պատերազմը, նա նշանակուեց երկու դիւիզիայի գլխաւոր և կռւում էր Բուլգարիայում, Ռուշչուկի շրջանում։

1881 թ., երբ արդէն պատերազմը վերջացած էր, կոմս Վորոնցով Դաշկովը նշանակուեց պալատական նախարար և 17 տարի վարեց այդ պաշտօնը։ Սորանից յետոյ 1897 թ. նա նշանակուեց Պետական Խորհրդի անդամ և այդ պաշտօնում մնաց մինչև 1905 թ., երբ Կայսրը բարեհաճեց վերականգնել Կովկասի փոխարքայութիւնը, և կոմսը հրաւիրուեց այդ պաշտօնն ստանձնելու։ Նոյն թուականի փետրուարի 26-ին Կայսերական հրամանով կոմս Վորոնցով-Դաշկովը նշանակուեց Փոխարքայ և գլխաւոր հրամանատար Կովկասի զօրքերի։ Այս պաշտօնը նա վարեց 10 տարի։

Կոմսը Փոխարքայի պաշտօնով մուտք գործեց Թիֆլիս մայիսի 5-ին և ժողովուրդն ընդունեց նրան մեծ փառքով և պատւով։

Երբ 1914 թ. յայտարարուեց մեծ պատերազմը Գերմանիայի և Աւստրիայի, իսկ յետոյ և Տաճկաստանի դէմ, կոմս Վորոնցով-Դաշկովին յանձնուեց գլխաւոր հրամանատարութիւնը Տաճկաստանի պատերազմական ճակատում։

25 օգոստոսի անցեալ 1915 թ. Կայսերական հրովարտակով կոմս Վորոնցով-Դաշկովը հիւանդութեան պատճառով և իր խնդրանօք հեռացաւ Փոխարքայի ու գլխաւոր հրամանատարի պաշտօնից և նշանակուեց լինել Կայսրի մօտ։

Կայսերական հրովարտակի մէջ այդ առթիւ ասուած է հետևեալը.

«1905 թ. Ես բարւոք համարեցի Ձեզ նշանակել Իմ Փոխարքայ։ Ձեր խորագոյն ծանօթութիւնը երկրի և երկարատև ու բազմակողմանի գործունէութիւնը ներշնչում էին Ինձ լիակատար հաւատ, որ Ձեր ստանձնած խնդիրները— երկրի մէջ խաղաղութիւն մտցնել, երկրի տնտեսական դրութիւնը բարւոքել, կարգ և կանոն հաստատել — կը կատարէք մեծ յաջողութեամբ։ Ձեր նշանակելուց յետոյ, առաջիկայ տարիների ընթացքում Դուք արդարացրիք Ձեր վրայ դրած յոյսերս, որը Ես ամբողջովին վերագրում եմ Ձեր ստանձին ջանքերին։ Դուք Ձեր բոլոր ընդունակութիւնները և ոյժերը նուիրեցիք միութեան անհրաժեշտ կապ հաստատելու հեռաւոր բազմացեղ երկրի և մեր հայրենիքի միւս մասերի մէջ»։

Հանգուցեալ կոմս Վորոնցով-Դաշկովի գործունէութիւնից, իբր Կովկասի Փոխարքայի, պէտք է ընդգծել գոնեա մի քանի խոշոր գործերը։

Մինչև կոմս Վորոնցով-Դաշկովի Փոխարքայ նշանակուելը և Կովկաս գալը, Կովկասի ամբողջ ազգաբնակութիւնը, մանաւանդ հայերը, շատ ճնշուած, նոյնիսկ ահաբեկուած էին տխրահռչակ իշխ. Գոլիցինի ռէժիմից։ Հայոց դպրոցները փակուած էին և եկեղեցական կալուածքները գրաւուած, բազմաթիւ մարդիկ աքսորուած կամ տնքում էին բանտերում։

Կոմս Վորոնցով-Դաշկովը, լաւ իմանալով, որ հայերին արդարութեան հակառակ վիրաւորել և հալածել են և որ հարկաւոր է գոհացում տալ նրանց, ուստի նախ քան Կովկաս ուղևորուելը ստացաւ Կայսերական հրաման՝ յետ դարձնել հայոց եկեղեցական կալուածքները և թոյլ տալ հայոց փակուած դպրոցները վերաբացել և նորերը բանալ, որ և կատարուեց։

Նա գալով Կովկաս հանդիպեց ժողովրդական հրդեհի։ Շնորհիւ պրովոկացիայի, արիւնահեղ կռիւ էր երկու հարևան ազգերի՝ հայերի ու թուրքերի միջև։

Կոմսը յաջողեց առանց մեծ խառութիւնների դիմելու վերջ տալ այդ ամօթալի ու անմիտ կռուին։ Նա հրաւիրեց իր պալատը երկու ազգերի ընտրովի ներկայացուցիչներին, կազմեց համագումար։ Մի շարք նիստերում պարզուեց պրովոկացիայի կատարած դերը ներսից ու դրսից թուրքերի մէջ։ Համագումարի բարոյական հեղինակութիւնը ազդեց թուրք և հայ ազգաբնակութեան վրայ և ընդհարումները վերջացան։ Այդ համագումարը պատմական նշանակութիւն ստացաւ և մի ուրիշ կողմից. երկու ազգերի ներկայացուցիչները միահամուռ ցանկութիւն յայտնեցին Փոխարքային, որ վերջապէս շնորհուի Կովկասին բարձրագոյն դպրոց։

Կոմս Վորոնցով-Դաշկովը համակրանքով վերաբերուեց այս մտքին և շնորհիւ նրա առանձին ջանքերի և եռանդի, ստացուեց Բարձրագոյն թոյլտուութիւն՝ հիմնելու Թիֆլիսում բազմարուեստեան դպրոց—պոլիտեխնիկում, որի շինութեան հիմքը մեծ հանդիսով իւր ներկայութեամբ դրուեց 4 մարտի 1914 թ. Հաւլաբարի և Նաւթլուղ քաղաքամասերի մէջ տեղում։

Կոմսը իր կառավարութեան առաջին տարիներից սկսած զբաղուեց Կովկասում զեմստւօ մտցնելու խնդրով և հրաւիրեց ժողովրդի ներկայացուցիչներից մի համագումար՝ Կովկասեան զեմստւոյի նախագիծ մշակելու։

Շատ նշանաւոր տեղ է բռնում հանգուցեալ Փոխարքայի գործունէութեան մէջ և գիւղացիութեան կալուածատէրերից ազատուելու խնդիրը։

Այդ խնդիրը վերջնականապէս լուծուեց յօգուտ գիւղացիների։ Պետական գանձարանը գնեց կալուածատէրերից այն հողերը, որ մշակում էին գիւղացիք, ապրելով մշտապէս նրանց հողի վրայ և կատարելով որոշ պարտաւորութիւններ, և յանձնեց այդ հողերը գիւղացիներին ի սեփականութիւն, որոնց արժէքը գիւղացիք տարիների ընթացքում մաս-մաս պէտք է վճարեն գանձարանին։ Այս կարգադրութեամբ գիւղացիութիւնը իսպառ ազատուեց կալուածատէրերի ճնշումից և տնտեսական կախումից։

Վերջապէս ուշադրութեան արժանի է կոմսի աշխատանքը Կովկասեան լեռներով երկաթուղի անցկացնելու խնդիրը, որ մեծ զարկ կըտայ Անդրկովկասի առաջադիմութեան, արդիւնաբերութեան, առևտրին և գիւղատնտեսութեան զարգացման, մանաւանդ մեծ նշանակութիւն կունենայ Թիֆլիսի համար։

Իսկ ռազմական տեսակէտից այդ ճանապարհի կարևորութիւնը ակներև է և ներկայումս մանաւանդ շատ զգալի։

Մինիստրների խորհրդի անդամների ահագին մեծամասնութիւնը այդ ճանապարհի կառուցման ընդդէմ կարծիք յայտնեց. բայց կոմս Վորոնցով-Դաշկովը, շնորհիւ իր իմաստալից պատճառաբանութիւնների և Կայսրի կողմից վայելած վստահութեան և համակրանքի, յաջողեց դրական լուծումն տալու։

Կայսրը հրաման տուաւ հետազօտել ճանապարհի ուղղութիւնները և նախապատրաստական աշխատանքներ կատարել, որոնց համար նշանակուեց և գումար պետական գանձարանից։ Բայց ներկայ պատերազմը խանգարեց այս և խնդիրը յետաձգուեց։

Հանգուցեալ կոմս Վորոնցով-Դաշկովը մեծ մարդ էր Ռուսաստանի պետական կեանքի համար. Նրա գործունէութեան գնահատութիւնը ապագայ պատմաբանին է մնում

Կոմս Վորոնցով-Դաշկովը և նրա ամուսինը՝ կոմսուհի Ելիզավետա Անդրէևնան Կ. Հ. Բ. Ընկ. 30-ամեայ յոբելեանի ժամանակ, 1912 թ., ընտրուեցին պատուաւոր անդամ Ընկերութեան, և միշտ ցոյց էին տալիս իրենց հովանաւորութիւնը Ընկերութեանը։

Ս. Յարութիւնեան

---

## ՀԱՅ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻՆ ՕԳՆՈՂ ՖՐԱՆՍԻԱՑՈՑ ԿՈՄԻՏԷ

Հայ փախստականների վիճակը, ինչպէս նկատւում է, արտասահմանում մեծ հետաքրքրութիւն է շարժել և կարեկցութեան արժանացել։

«Համբաւաբերի» նախորդ համարներում տեղեկութիւն էր տրուած, որ Անգլիայում և Ամերիկայում կազմուել են ընկերութիւններ, կոմիտէներ հայ փախստականներին նպաստելու համար և այդ երկրներից ստացւում են խոշոր գումարներ։

Ամերիկայից նոյնիսկ եկել են ամերիկացիներ՝ կազմակերպելու և անմիջապէս օգնելու փախստականներին։

Այժմ գոհութեամբ պէտք է արձանագրենք, որ հայ փախստականների վիճակը արձագանք է գտել Ֆրանսիայում ևս։ Պարիզում կազմակերպուել է մի կոմիտէ՝ օգնութեան ձեռք կարկառելու հայ փախստականներին։ Այդ փաստը հաստատւում է հետևեալ նամակով՝ Թիֆլիսի ֆրանսական կոնսուլի այս ամսի 19-ին գրուած և ուղղուած Կովկասի Հայոց Բարեգ. Ընկ. Խորհրդի նախագահ պ. Ս. Յարութիւնեանին.

Յարգելի պարոն նախագահ.

Պատիւ ունեմ Ձեզ յայտնելու, որ պ. Ա. Ֆերդինանդ Հերոլդը, որ գանձապահն է Պարիզում հաստատուած մի յանձնաժողովի, որի նպատակն է՝ օգնութեան հասնել թիւրքերից հալածուած հայերին, ուղարկել է ինձ 3250 ֆրանկի մի գումար, որ նա խնդրել է ինձ այդ նպատակի համար յանձնել Թիֆլիսի Հայոց Բարեգործական Ընկերութեանը։

Ընդունեցէք, յարգելի պ. նախագահ, իմ խորին յարգանացս հաւաստիքը։

Բերժէրօն

---

## ՀԱՄԱՌՕՏ ՏԵՍՈՒԹԻՒՆ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԾԱԳՄԱՆ. ԱՐԴԻ ԿԱՑՈՒԹԵԱՆ, Կ. Հ. Բ. Ը-ԹԵԱՆ ԵՒ ՆՐԱՆ ԿԻՑ ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷԻ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ*)

Կոմիտէի և Բ. Ը-թեան ամենաբեղմնաւոր աշխատանքներից մէկը պէտք է համարել ապաստարանները, որոնց կարիքն անչափ մեծ էր, քանի որ հազարաւոր երեխաների ծնողները զոհ գնալով բարբարոս տաճկի և քրդի սրին, մեռնելով քաղցից, ցրտից և տարափոխիկ հիւանդութիւններից, թողել էին իրենց զաւակներին անտէր անտիրական։

Այժմ կոմիտէն պահում է հետևեալ ապաստարաններ՝

| | | | | |
|---|---|---|---|---|
| 9 | ապաստարան | Դիլիջանում | 800 | որբ |
| 4 | » | Թիֆլիսում | 600 | » |
| 1 | » | Նոր-Բայազիտում | 120 | » |
| 1 | » | Ղարսում | 40 | » |
| 1 | » | Գանձակում | 75 | » |
| 1 | » | Ղարաքիլիսայում | 235 | » |
| 1 | » | Նախիջևանում | 60 | » |
| 1 | » | Սանահնում | 177 | » |
| 1 | » | Ալէքսանդրապոլում | 30 | » |
| 1 | » | Իգդիրում | 110 | » |

Եղբայրական օգնութեան կոմիտէի հովանաւորութեան ներքոյ գտնւում են,

| | | | | |
|---|---|---|---|---|
| 3 | ապաստարան | Երևանում | 610 | որբ |
| 2 | » | Էջմիածնում | 370 | » |

Բագուի կոմիտէի հովանաւորութեան ներքոյ՝

| | | | | |
|---|---|---|---|---|
| 3 | ապաստարան | Հայոց գիւղում | 255 | » |

Մոսկուայի կոմիտէի հովանաւորութեան ներքոյ,

*) Տես «Համբաւաբեր» № 4.

| | | | |
|---|---|---|---|
| 1 ապաստարան | Աշտարակում | 200 | » |
| Նպաստամատոյցի հովանաւորութեան ներքոյ | | | |
| 1 ապաստարան | Թիֆլիսում | 115 | » |
| Ծխական հոգաբարձութեան հովանաւորութեան ներքոյ. | | | |
| 1 ապաստարան | | 60 | որբ |
| Տիկին Թայիրեանի որբանոցը, Ղարաքիլիսայում | | 30 | որբ |

Դզլարի ապաստարանում 30 որբ, ուրեմն 34 ապաստարաններում 3,822 որբ են պատսպարուած, բայց կան բաւական որբեր, որոնք դեռ չեն տեղաւորուած. Նրանց համար նա բացւում են ապաստարաններ Թիֆլիսում, Գանձակում, Նոր-Բայազէտում և այլ տեղերում։ Նոր ապաստարաններ հարկաւոր են, քանի որ մօտաւորին կայ 2,000 որբ։ Բացի Ղարաքիլիսայի, Պետրոգրադի և Բաքուի որբանոցներից նպաստներ ստանում են Կովկ. Հ. Բ. Ընկ. միջոցով։

Ապաստարանում որբերի վիճակը պէտք է համարել գոհացուցիչ. բոլորն էլ ունին տաք հագուստ, մահճակալ, կերակրւում են օրական 4 անգամ. հիւանդների և թոյլերի սնունդի վրայ առանձին ուշք են դարձնում։ Ամեն մի որբանոց ունի կառավարչուհի, օգնականուհի, դաստիարակչուհի, մայրապետներ, սեփական խոհանոց, լուացարան, վաննա։ Բացի այդ՝ ապաստարանում երեխաների հետ պարապում են ուսուցիչներ և կամ թէ առանձին բացուած դպրոցներում։

Ապաստարանները ունեն կամ սեփական հիւանդանոց և կամ օգտւում են քաղաքների միութեան փախստականների համար բացած հիւանդանոցներից։ Այս գործը կաղում է, քանի որ բոլորը չեն օգտւում։ Անհրաժեշտ է, որ ամեն մի ապաստարան, որ ունի մինչև հարիւր որբ, ունենայ մէկ ֆելդշեր և փոքրիկ հիւանդանոց 10 մահճակալով. իսկ որտեղ որբերի թիւը հասնում է մի քանի հարիւրի—մեծ հիւանդանոց բժշկական լրիւ կազմով։

Եւ որովհետև երեխաների ապաստարանները գտնւում են ազգային հաստատութեանց ձեռքին, ուստի պէտք է փախստականների բժշկա-սանիտարական գործը եւս ամբողջովին անցնի նոյն հաստատութեանց կամ քաղաքային միութեան ձեռքը։ Ամեն մի որբի համար կահաւորումը նստում է ոչ պակաս քան 30 ր., իսկ ապրուստը 10—15 ր.։

Կոմիտէն և Բ. Ը-թիւնը զբաղուել են փախստական երեխաների կրթութեան հարցով։ Բացել են դպրոցներ՝

| | | | | |
|---|---|---|---|---|
| Թիֆլիսում | ուսուցչական | կազմը | 11 | հոգի |
| Թիֆլիսի որբանոցներում | » | » | 6 | » |
| Ջալալ-Օղլիում | » | » | 3 | » |
| Գիւլագարակում | » | » | 1 | » |
| Օձանում | » | » | 1 | » |
| Դսեղում | » | » | 1 | » |
| Սանահնում | » | » | 3 | » |
| Եկատերինֆելդում | » | » | 2 | » |
| Բոլնիս-Խաչենում | » | » | 1 | » |
| Շնողում | » | » | 1 | » |
| Շուշի գաւառում | » | » | 2 | » |
| Նոր Բայազէտ քաղաքում | » | » | 2 | » |
| Ներքին Գեօզալդարայում | » | » | 1 | » |
| Վարի-Աղալուում | » | » | 1 | » |
| Ներքին-Ադիամանում | » | » | 1 | » |
| Վերին-Ղարանլուխում | » | » | 1 | » |
| Ներքին Քէօլադրանում | » | » | 1 | » |
| Քեարիմքեանդում | » | » | 1 | » |
| Դշլաղում | » | » | 1 | » |
| Ներքին-Ախտայում | » | » | 1 | » |
| Դիլիջանում | » | » | 8 | » |
| Պօղոսքիլիսայում | » | » | 1 | » |
| Դժարխիլում | » | » | 2 | » |
| Վերին-Աղդանում | » | » | 2 | » |
| Խաշտարակում | » | » | 1 | » |
| Քարուանսարայում | » | » | 1 | » |
| Աղաջրում | » | » | 1 | » |
| Սև-Քարում | » | » | 2 | » |
| Ղարաքիլիսայում | » | » | 2 | » |
| Համամլուում | » | » | 1 | » |
| Դշլաղում | » | » | 1 | » |
| Սպիտակ-գիւղում | » | » | 1 | » |
| Բէքեանդում | » | » | 1 | » |

Ընդամենը 32 վայրում 66 ուսուցիչ և ուսուցչուհի։ Բայց այս բոլորը չեն, դեռ բացւում են միւս շրջաններում էլ։ Փախստականների դպրոցները երկու նպատակի են ծառայում, ա) տաճկահայ ուսուցիչները աշխատանք են գտնում, բ) փախստական երեխաները հնարաւորութիւն են ստանում կրթութիւն ստանալ։ Միայն թէ, պէտք է ասել, որ համեմատած պահանջի հետ ուսումնարանների թիւը չափազանց աննշան է։ Դպրոցական տարիք ունեցող երեխաների թիւը հասնում է տասնեակ հազարների, իսկ սովորում են 3000 հոգի։

Փախստական երեխաների կրթական գործը ամբողջովին յանձնուած է հայ ուսուցչական կոմիտէին, որի ներկայացուցիչները մտնում են կենտ. կոմ. կազմի մէջ։

Բացի այդ կոմիտէն բացել է փախստական երեխաների համար Դիլիջանում արհեստանոց-դպրոց՝ 1 հիւսնութեան, 1 կօշկակարութեան և 1 կարուձևի. Թիֆլիսում 1 կազմարարի և ծրարների դպրոց-արհեստանոց։ Այդ դպրոցներում սովորում են 100 աշակերտ և աշակերտուհի։

Աչքաթող չի եղել փաստականների համար աշխատանք ճարելու գործը եւս։ Այդ նպատակով բացել է՝ 1) արհեստանոցներ Թիֆլիսում Գանովսկի և Օլգինսկի փողոցներում, որտեղ պատրաստում են անկողին և շորեր. 2) բացել է աշխատանքի բիւրօ և 3) արհեստանոցներ Դիլիջանում և Ղարաքիլիսայում։ Պէտք է ընդգծել, որ այս ասպարիզում չափազանց քիչ բան է արուել, աշխատաւորների թիւը հազիւ հազ մի քանի հարիւրի հասնի։ Այս դէպքում պայմաններն են անտանելի. 1) չկայ աշխատանք, 2) փախստականները հիւծուած են, մերկ. հետևապէս լաւ աշխատաւորներ չեն կարող լինել. ուստի մեծ դժուարութեամբ են նրանց աշխատանք տալիս. մի կողմն եմ թողնում նրանց հոգեկան ծանր դրութիւնը, որ առաջացել է ընտանիքի անդամների $^2/_3$-ի կորստից և ահելի ու սարսեցուցիչ արհաւիրքներից։

Գարնանը, երբ խնդիր եղաւ Ալաշկերտի փախստական աշխատաւորներին վերադարձնելու և Տաճկաց Բասենում և Կիսկաշում ապաստանածների տնտեսութիւնը վերականգնելու, կոմիտէն այդ վայրերը ուղարկեց երկրագործական գործիքներ, սերմնացու և 14,000 ռ. է տուել այդ նպատակի համար Հայոց Գիւղատնտեսական ընկերութեանը, որի մէջ մտնում են կոմիտէի և Բար. ընկ. երեք անդամ։

Կոմիտէն իր լիազօրի միջոցով մասնակցել է Ղարսի նահանգի պատերազմից վնասուած գիւղացիութեան տնտեսութիւնը վերականգնելու գործում, պետական միջոցներով։ Նա իր հաշուով մանրամասն ուսումնասիրել է Սողանլուղի, Խորասանի և Բարդուսի գաւառակների բնակիչների կարիքը և կորուստը առանց ազգի խտրութեան և ստանալով պետութիւնից միջոց, բաժանել նրանց սերմացու։

Կոմիտ. և Բ. Ը-թիւնը իրենց գործունէութեան ընթացքում փախստականների համար ունեցել են՝

Մուտք մինչև յունուարը 1916 թուականի՝ 646,367 ռ. 72 կ., իսկ ելք՝ 591,876 ր. 62 կ.։ Նոյն ուղղութեամբ գործել են և գործում են այլ ազգային հասարակական հիմնարկութիւններ՝ Եղբայրական օգնութեան, Բաքուի, Մոսկուայի կոմիտէները, որոշ չափով Նպաստամատոյց, Հայոց գիւղատնտեսական ընկերութիւնը՝ տնտեսութիւնը վերականգնելու գործում։ Մինչև 1915 թ. ապրիլ ամիսը գործել են միայն ազգային հասարակական հիմնարկութիւններ. ապա օգնութեան է եկել Կովկ. գլխաւոր կոմիտէն՝ մեծ մասամբ ազգային հիմնարկութիւնների միջոցով. հոկտեմբերին քաղաքների միութեան բժշկա-սանիտարական գործում և կառավարութիւնը իր գլխաւոր լիազօր գեներալ Թամամշեանի միջոցով, որը գործում է գլխաւորապէս վարչութեան միջոցով։

Ցաւօք սրտի պէտք է ասել, ինչպէս շեշտել եմ արդի կացու-

թեան նկարագրութեան մէջ, փոխատուականների վիճակը դեռ եւս մխիթարական լինելուց շատ հեռու է։ Մինչեւ օրս էլ փոխատուականները կիսաքաղց գրութեան մէջ են գտնւում. ունեն չոքի, անկողնի, ամանեղէնի մեծ պակասութիւն. բծաւոր, աղիքի տիֆը և այլ տարափոխիկ հիւանդութիւնները տարածուած են ամեն տեղ և ահագին զոհեր են կլանում. հասցրած օգնութիւնը աննշան է՝ համեմատած ծով կարիքի հետ։ Փախստականների ապրելու կացութիւնը բարւոքելու, գործը կազմակերպելու և կանոնաւոր հողի վրայ դնելու համար կըխօսենք հետևեալ անգամ։

Ա. Շարաֆեանց

---

## ՀՈՂԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ ՓԱԽՍՏԱԿԱՆ ԵՐԵԽԱՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Լրագիրներից յայտնի է, որ վերջին աղէտից ճողոպրած ու այլ և այլ որբանոցներում զետեղուած որբերին սովորեցնում են ամեն տեսակի արհեստներ ու ձեռարհեստներ։ Գովելի է, հարկաւ, որբերին խնամող կազմակերպութիւնների եռանդը։ Սակայն մի բան աչքի է զարնում. ոչ մի լրագրում, ոչ մի տեղ ոչ մի խօսք, ոչ իսկ մի ակնարկ չերևաց, որից իմանայինք, որ որբերին սովորեցնում են հողագործութիւն և նրա հետ կապուած գիտելիքներ։ Տարրական ճշմարտութիւն է, որ ամեն մի ազգի հիմքը կազմում է գիւղացիութիւնը, այն անհրաժեշտ տարրը, առանց որի ազգութիւնը ազգ չէ, այլ լոկ մի ցեղ։ Եւ այդ տարրի նշանակութիւնը անչափ մեծ է, մանաւանդ սեփական պետական կեանք չունեցող ու ձուլման ենթարկուող մի ազգութեան համար, իբրև միակ անխախտ, ամուր ու անշարժ ուժը, որի վրայ կարող է հիմնուել ազգային դատը։

Երբ մարմնի մի օրգան գործառութեան դադարում կամ փոփոխւում է, մարմնական կեանքի՝ անհամաչափութիւնը ցուցադրօրէն անդրադառնում է ամբողջ կազմուածքի (օրգանիզմի) վրայ։ Իսկ յայտնի է, որ [illegible]

[illegible] Միք. Թումանեան

---

## ՀԱՆԴԷՍ ՀԱՅՈՑ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԵԱՆ

### ԲՐԻՒՍՈՎԻ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆԸ

I

Կովկասը, որ իրաւամբ ռուս պետութեան թագի «մարգարիտն» է կոչւում, ցաւալիօրէն շատ ուշ է գրաւել իր վրայ թէ պետական և թէ գիտական անձանց ուշքը։ Ամենից աւելի ուշ սկսւում է Կովկասի ազգերի ուսումնասիրութիւնը առհասարակ։ Վերջերս միայն, այն էլ մասամբ, եթէ չասեմ գլխաւորապէս, Կովկասի ազգերի անհատների ջանքերով ռուս գրողների մի նշանաւոր խումբ իր վրայ է առել ռուս հասարակութեանը ծանօթացնել Ռուսաստանի այլացեղ ազգերի գրականութիւնը։

Այս խմբից է ռուս ականաւոր բանաստեղծ Վալերիյ Բրիւսովը, որ նախ Բագւում տեղի «Հայ Դրամատիկների Ընկերութեան» հրաւէրով մի դասախօսութիւն կարդաց «Հայոց բանաստեղծութեան» մասին և կրկին Թիֆլիսում «Հայ Գրողն. Ը-թեան.» հրաւէրով, յունւարի 13-ին։

Հեղինակի անունը, թէրեւս և դասախօսութեան նիւթը նրա անուան կից հրապուրել էր մի ահագին բազմութիւն հայերից, որ նման հանգամանքներում Թիֆլիսում սովորական չէ, ժողովուելու Արտիստական թատրոնի դահլիճում։

Բրիւսովը ամբիոն բարձրացաւ մեր բանաստեղծ Յ. Թումանեանի առաջնորդութեամբ, որը դիմեց հասարակութեան և դասախօսին մօտաւորապէս հետևեալ խօսքերով. Այս մեր ազգային աղէտի ժամանակ հեռաւոր հիւսիսից գալիս է ռուս հռչակաւոր բանաստեղծը, խօսելու մեր քաղաքական-հոգեկան ուժի և մեծութեան՝ «Հայոց բանաստեղծութեան» մասին, որ անուանում է հայ ազգի ազնուականութեան վկայական։ Այո, իրաւ, հայ հանճարը խօսել է արդի ամենանուիրական ու ամենաքնքոյշ զգացմունքների հետ և հասնելով մինչև Նարեկացին՝ խօսել է Աստծու հետ։ Այսօր էլ յօշոտուած ու արիւնաշաղախ՝ չէ դադարում ստեղծագործութեան ասպարէզում։ Էլ աւելի մեծ ազնուականութեան ինչ վկայական կարող է ներկայացնել աշխարհին մի ժողովուրդ։ Բայց այս վկայականը, մեր թանկագին հիւր, այն վկայականներից չէ, որ կրում է մարդկային իշխանութեան, այլ բնութեան և Աստուծոյ կնիքը։ Եւ որքան դժուարին է այդ ունենալը, այնքան էլ աւելի դժուար կարդալը։ Այս այն գիրն է, որի համար մեր Սայաթ-Նովան ասում է. «Ամեն մարդ չի կանայ կարթա, իմ գիրն ուրիշ գրէն է...»։ Ապա Գրողների Ընկերութեան կողմից ողջունելով Բրիւսովին՝ յայտնեց, որ իբրև առաջինը կարողացաւ կարդալ «խորհրդական գիրը» աշխարհի առաջ և իր ընկերներով ցոյց տալ աշխարհին հայոց և վրացոց ստեղծագործական կարողութիւնը. բարի գալուստ մաղթեց Բրիւսովին, որի նախորդների՝ Պուշկինի, Լերմոնտովի, Գոգոլի, Դոստոյեւսկու, Տուրգենեւի, Չեխովի և իրենց արժանաւոր ժառանգների գրականութեան վրայ կրթուել են շատ ու շատ հայեր, որոնց առաջ ամենքը խոնարհւում են։

Մեծանուն բանաստեղծը շնորհակալութիւն յայտնելով իր ցնծալից ընդունելութեան համար՝ այսպէս սկսեց իր դասախօսութիւնը. «Այս սրտագին ընդունելութիւնը և փառաբանութիւնը, որ ինձ ցոյց է տրւում, ինձ շփոթեցնում է։ Ես կանգնած եմ մի ծանր խնդրի առաջ։ Ոչ մի եւրոպական ազգ՝ ոչ գերմանացիք, ոչ ֆրանսացիք, ոչ անգլիացիք և ոչ իսկ իտալացիք ու յոյները, քանի որ վերջին երկուսն էլ տարբեր լեզուներ և ազգաբանական [illegible] ունին, քան հռովմայեցիք և հելլէնները, չէ կարող պարծենալ իր երկհազարամեայ բանաստեղծութեամբ, ինչպէս հայերը։ Ես մի տեսակ երկիւղ եմ զգում, որ իբրև ռուս հեղինակ վըստահանում եմ հայ հասարակութեան առաջ դուրս գալ Հայոց բանաստեղծութեան մասին խօսելու։ Ես պէտք է ասեմ, որ չեմ կարող հանդէս գալ իբրև ուսուցանող, չնայելով որ խորին ակնածութեամբ և ջերմեռանդութեամբ վերաբերուել եմ այս խնդրին։ Բայց և այնպէս կարծում եմ, որ հայերից էլ հետաքրքրական կը լինի ի-

մնալ մի օտարի՝ ռուսի տպաւորութիւնը հայոց բանաստեղծութեան մասին: Ուստի և իմ դատախօսութիւնը քննադատութիւն չէ հայոց բանաստեղծութեան, այլ փորձեր են, հաղորդելու ձեզ ռուսերէն այն խոհերը, զգացմունքները և մտքերը, որ երևում են Հայոց բանաստեղծութեան ընթացքում: Եթէ այստեղ մի առանձին նշանակութիւն ունեցող բան կայ իմ կողմից անձնապէս, այդ իմ թարգմանութիւններն են, որ ես մէջէ մէջ կը կարդամ: Սակայն այս խնդիրը մի մարդու բան չէ, ուրիշ և պակասներ կը լինին. ուստի և ես չեմ կարող նոյն իսկ խոշոր հեղինակներից հատուածներ կարդալ: Այս պակասն անշուշտ կը լրացնեն շատ այլ ռուս հեղինակներ, որոնք այժմ աշխատում են հայոց բանաստեղծութիւնը ծանօթացնել ռուս հասարակութեան: Հայ բանաստեղծները շատ շատ են, որոնց մասին ես չեմ կարող մի դատախօսութեամբ, թէկուզ թեթևակի սահելով, անցնել, ուր մնաց որ կայ մեր առջև և հայ ժողովրդական բանաստեղծութիւնը, որի հետ սերտ կապուած են ինչպէս հին, նոյնպէս և նոր հայ բանաստեղծները, այն ժողովրդական բանաստեղծութիւնը, որ այսօր էլ հնչում է Մասիսի և Վանայ լճի շուրջը:

Աւելորդ համարելով խօսել հայ ունկնդիրների առաջ, թէ որքան Հայաստանի պատմական վիճակն ազդել է Հայոց կուլտուրայի վրայ, համեստութեամբ, բայց ակամայ ճշմարիտ հեգնութեամբ, շարունակում է Բրիւսովը: Ես ուզում եմ ընդգծել միայն մի գիծ, որ ինչպէս մի ուղեցոյց ճրագ է, որ լոյս է սփռում հայոց գեղարուեստական մտքի վրայ: Այս գիծը կարելի է արտայայտել հետևեալ բառերով. Հայաստանը Եւրոպայի առաջապահն է Ասիայում:

Երկու տարերք (начала) տիրապետող են թէ Հայոց պատմութեան և թէ Հայոց ստեղծագործութեան մէջ, արևելեան և արևմտեան տարերք, այն է՝ իրանականութիւն և հելլենականութիւն: Ժամանակի ընթացքում թէպէտև փոփոխւում էին ձևերն ու անունները, բայց էութիւնը նոյնն էր մնում: Եւ այս հասկանալի է դառնում, եթէ ի նկատի առնենք այն հզօր ազդեցութիւններն ու ներգործութիւնները, որոնց ենթարկուեց Հայաստանը իւր երկու և կէս հազարամեայ գոյութեան ընթացքում:

Հին պարսից տիրապետութիւնը՝ սկսուած Ե. դարից Ն. Ք. թողել է խորին հետքեր Հայոց կեանքում. մինչև իսկ պարսկական՝ զրադաշտական կրօնը տարածուեց շուտով և Հայաստանում: Մինչդեռ Ալեքսանդր Մակեդոնացու տիրապետութեան շրջանում, որին ենթարկուեց և Հայաստանը, և մանաւանդ Տիգրան Բ. Մեծի թագաւորութեան դարաշրջանում, որ հիմնեց մի ահագին անկախ պետութիւն, հանդէս եկաւ Հելլադայի բարերար ազդեցութիւնը: Մինչև իսկ մի ժամանակ Հայ ազատանին ոչ միայն յունարէն էր խօսում, այլ և այդ լեզուով ստեղծագործում էր (Արտաւազդը, Տիգրանի որդին), և Հայաստանի գլխաւոր քաղաքներում յոյն դրամերգակների (դրամատուրգ) լաւագոյն երկերը ներկայացնում էին:

Այնուհետև Հայոց յաջորդ պատմութեան ընթացքում այս երկու ազդեցութիւնները—իրանական կամ արևելեան և հելլենական կամ արևմտեան—նորէն ու նորէն հանդէս են գալիս զանազան ձևերով և անուններով, այն է՝ հռոմէական և պարթևական, հին-բիւզանդական և նոր-պարսկական, նոր-բիւզանդական և ասորական-արաբական. արևմտեանը Կիլիկիոյ (Ռուբինեան) դարաշրջանում և արևելեանը Մողոլների արշաւանքների ժամանակ, եւրոպականը (Հայոց գաղութների միջոցով) և արևելեանը (օսմանցոց և պարսից տիրապետութեան միջոցին):

Համադրութիւնը (синтезъ) այս երկու—արևմտեան և արևելեան—տարրերի ստեղծագործութեան կազմում է Հայ ժողովրդի պատմական առաքելութիւնը (миссія):

Հայաստանը յաջողակ կերպով այս երկու հակադրութիւնները կարողանում է միացնել և ստեղծել իւր ազգայինը, իւր ինքնուրոյնը:

Եւ այս երկմիութիւնը շատ պայծառ երևում է Հայոց բանաստեղծութեան մէջ, որի ամենից գլխաւոր և էական աղբիւրն է Հայոց ժողովրդական բանաստեղծութիւնը:

(Շարունակելի) Սկայ

---

## ՀԱՅ ՄԱՄՈՒԼԻ ԴԵՐԸ

«Համբաւաբեր»ի երևան գալը ուրախալի երևոյթ մըն է մեր կեանքի ներկայ խառնաշփոթ իրականութեանը մէջ:

Իրապէս լաւագոյն և եռանդուն ոյժերու թևերուն կռթնած հասարակական ու գրական շաբաթաթերթի մը գոյութիւնը անհրաժեշտ էր, երբ մանաւանդ մէկ կողմէն այդպիսին՝ ամբողջական արտայայտութիւնը կը կազմէ Կովկասի Հայ. Բարեգործականի նման ընդարձակածաւալ ընկերութեան մը և միւս կողմէն կընդգրկէ գրականութեան ներկայ ամուլ և անգոյն վիճակին մէջ, որոշ շարժում մը, ոգեւորութիւն մտցնելու գաղափարականը:

Բայց առաւել «Համբաւաբեր»ը կառաջադրէ իւր անշեղ և միակ նպատակը՝ ծառայելու ժողովրդին և անոր լաւագոյն ձգտումներուն և կարիքներուն անկեղծ արտայայտիչը հանդիսանալ—ինչ որ որևէ թերթի բարոյական բարձրութեան չափանիշը կը կազմէ մեր կարծիքով:

Հայ թերթ և Հայ խօսքը, շատ մեծ արժէք ունեն մեր մէջ այս րոպէիս: Մեր տառապանքին ու մեր հոգեկան տրամադրութիւններուն միակ արտայայտիչն են անոնք, մեր միակ մխիթարութիւնը՝ արհաւիրքի այս ծանր օրերուն մէջ:

Մի ծանր և արիւնոտ մղձաւանջ իջեր է և ծանրացեր այսօր մեր կուրծքերուն վրայ: Ոչ մէկ ճար ունենք ճզմելու և հեռ վանելու այս արիւնոտ կոշմարը: Ոչ մէկ դարման խորտակելու և սանձելու մեր դարաւոր թշնամու բարբարոսութիւնն ու գազանութիւնը: Մենք մենակ ենք այսօր աշխարհի թատերաբեմին վրայ, ներկայ սոսկալի փայրիվերումին մէջ: Երջանիկ հզօրներն ու բարբարոսները ուրախութեան երգերը կը հիւսեն մեր կործանուած հայրենիքին, մեր փշրուած պաշտամունքներուն վրայ:

Մեր հրդեհուած օջախներուն մէջ, անյագ բորենիներու նման սանձարձակ պար կուգան անոնք կատաղօրէն:

Մեր դժբախտութիւնը եզակի է աշխարհի համատարած դժբախտութեան մէջ: Մեր ֆիզիքական ոչնչացման հակառակ՝ ինչ խօսք որ տակաւին կը բաբախէ մեր սիրտը, տակաւին կը նկրտէ մեր դարակառոյց կամքը ....:

Մեռա՞ւ մարդկային խիղճը, մարդկային բանականութիւնը, արեան ու բարբարոսութեան ոճրապարտ աստուածն է գերիշխող այսօր:

Ո՞ւր մնացին մարդկութեան լաւագոյն զաւակներու օդակառոյց երազները, բարձրասլաց ու պերճաշուք իդէալները. ցնորք էին անոնք, աներևոյթացող, վաղանցուկ ցնորք...:

Արեան ու արցունքի, մեր տարագրուած հազարաւոր եղբայրներու աղեխարշ ցրութեան և հեռու՜ն—Միջագետքի անապատներուն մէջ տապակուող մեր քոյրերու և մայրերու հեծեծանքներուն հանդէպ՝ չկայ մեզ համար մխիթարութիւն:

Երբ մանաւանդ Նոր-տարուայ սեմին կըգտնուինք, երբ մանաւանդ նոր ակնկալութիւններու և յոյսերու կարաւանը դիմաւորէինք պիտի սրտաբաց:

Երէկը մեր կեանքի և գոյութեան դժբախտ գալարումները միայն տեսանք: Երէկը մեր մտքի և մշակոյթի ողջակէզը պատեցինք: Բայց վաղը, ի՞նչ պիտի վերապահէ մեզ այդ մշուշապատ և անստոյգ վաղը:

Պիտի գա՞յ մի օր, երբ հայրենի հողին վրայ Հայկական մարած կեանքը բողբոջի. երբ Արաքսի և Եփրատի հովիտներուն մէջ Հայկեան որդիներու լռած երգն ու կտրած բազուկը ստեղծագործէ և վերադարթնէ:

Մեր թշուառութեան ու մենակութեան այս անագորոյն օրե-

րուն՝ մի սփոփանք ունենք միայն, — մամուլը, մարդկային մտքի ու վշտի, խօսքի ու տառապանքի միակ արտայայտող ասպարէզը։

Շատ ունենք ասելիք, ահեղ և սարսափելի լուրեր ունենք հաղորդելիք մեր աշխարհէն։

Ահա՛ թէ ինչու «Համբաւաբեր»ի գոյութիւնը անհրաժեշտ է այսօր մեր մէջը, հակառակ կարգ մը անձերու ինքնասէր տրամադրութիւններուն, որոնց չարամիտ նպատակն է՝ թուլացնել հրատարակողներու ազնիւ եռանդը։

Բայց տարուիլ գլխաւորապէս քաղաքական կեանքով, ինչ որ ամենօրեայ թերթերը կընեն, ոչ միայն սովորական և անհետաքրքիր պիտի լինի, այլ և կրկնութիւն։ Չէ՞ որ թերթը հրատարակող ընկերութիւնը կուսակցական նպատակներն ու ձգտումները կը հետապնդէ ամենէն առելի։

Ուրախալի է թերթը հրատարակողներու այն բարձր և վեհ գիտակցութիւնը՝ Հայ գրականութեան և արուեստի հանդէպ։ Եւ ահա №2-ի մէջ իրաւամբ շեշտուած է այդ մասին։

«Ամենադարհուրելի ժամանակներում անգամ Հայը կարողացել է պահպանել իր ազգային ամենամեծ սեփականութիւնը—իր գիրն ու գիրքը։ Մենք էլ պարտաւոր ենք մեր նախնիքների կորովն ունենալ»։

Մի դարաւոր ճշմարտութիւնը կը զօղանջեն այս տողերը մեր ականջին։ Իրապէս այսօր դադարած է մեր ստեղծագործութեան թափը, մեր հզօր մտքի թռիչքները։ Կարող է Հայը ֆիզիքապէս տկարանալ, բայց անոր միտքը — ո՛, ոչ. անիկայ միշտ կը մնայ կանգուն՝ քանի դեռ գոյութիւն ունի Հայ ցեղի տառապանքը, անոր լաւագոյն բաղձանքները...։

Մենք, Թիւրքահայերս, ողջունելով «Համբաւաբեր»ի հրատարակութիւնը, կակընկալենք, որ ան կը կատարէ մի շատ կարեւոր — բայց մոռացուած — աշխատանք՝ ծանօթացնել ռուսահայ հասարակութիւնը Թիւրքահայ մշակոյթին և գրականութեան հետ, որն դժբախտաբար տակաւին շատ անծանօթ է մնացեր սահմանէն ասդին։

Ի՞նչ միտք ունի վշտանալ և արտասուել եղբայրակից ժողովուրդի մը տառապանքներուն վրայ, բայց անծանօթ լինել անոր մտքի ստեղծագործութեան և արուեստին հանդէպ։

Ահա թէ ինչ մոռացուած պարտականութիւն կարող է կատարել «Համբաւաբեր»ը։

Թորգոմեան

## ԹԵՐԹԵՐ ԻՄ ՅԻՇՈՂՈՒԹԻՒՆՆԵՐԻՑ

### I

### ԶՄՇԿԵԱՆ — ՀԱՅՐԸ

Դա մի պատկառելի, միջահասակ, լայն միրուքով, քաղցրախօս հոգևորական էր, որ քահանայագործում էր Սուրբ Սարգիս եկեղեցում։ Նրա շրթունքներից չէր հեռանում «ջան, ջանի, սիրելիս, անուշ ջան» բառերը։ Ինձ նման գիժ մի այլ երեխայ դըժուար գտնուէր, բայց ես և կատու էի կտրւում, երբ հայր Զըմըշկեանը դիմում էր ինձ ասելով.

—Վանօ ջա՛ն, պատուհաս ջա՛ն, պատիժ ջան, անուշ ջա՛ն, խելօք կաց...

Ես սրւում էի, վազում էի նրա մօտ, պատկառանքով համբուրում էի նրա աջը, իսկ նա ծոցի գրպանից հանում էր նշխարքը ու տալիս էր ինձ։ Ես երկար մնում էի նրա գրկում ու նայում բարի, համարձակ աչքերին...

Փաստաբան Յարութիւն Սարգսեան Զմշկեանը, որ այժմ Դրամատիկ ընկերութեան խորհրդի անդամ է, կրում է իր պապի՝ Տէր-Յարութիւնի անունը, թէպէտ դէմքով նրան շատ քիչ է նմանում։

Հայր-Զմշկեանի մէջքը ուղիղ էր, գլուխը բարձր պահած և այդ դիրքը նա պահում էր և իր մեծաւորի և իր ստորադրեալի առաջ։ Նա իր կեցուածքով կարծես ամենքին հասկացնում էր, որ ինքը ոչ ոքից ամաչելու կամ վախենալու պատճառ չունի. որ ինքը մի ճշմարիտ, անկողմնապահ, անաչառ և անկաշառ սպասաւոր էր իր եկեղեցու, իր Քրիստոսի։

Նա՞ իր որդոց ներշնչել էր սէր դէպի հայութիւնը, դէպի հայոց եկեղեցին և ես համարձակ կարող եմ ասել, որ Գէորգ Զըմըշկեանը և նրա եղբայրները երբէք անաստուած չեն եղել...

### II

### ՄԵՂՔԸ ԿԵՌԱԾ, ԲԵՐԱՆԸ ԲԱՑ

Ես յիշում եմ Գէորգ Զմշկեանին այնպէս, ինչպէս նա իրան նկարագրել է իր յիշողութիւնների սկզբում։ Ճշմարիտ որ նա, թուրը ձիգ կախուած, թրըրխկացնող, խթանները (շպօրները) զընգզընգացնող, բարձրահասակ մի երկրաչափ էր, մի փայլուն սպայի տիպար, որը գցեց սպայի զգեստը, փոխեց նրան սև սիւրտուկի ու մուտ գրկանքների, տանջանքների և արհամարհանքի ծովը, որպէս զի ծառայէ հայ բեմին, հաստատէ և հիմնաւորէ հայ բեմը. և այդ նա յաջողեց։ Նրա մատուցած ծառայութիւնները տուին իրանց պտուղը...

Գցեց Գէորգը իր շրջազգեստը ու հօր մէջքը կոտրուեց, կեռաց... Հայր-Զմշկեանը և ոչ մի յանդիմանական բառ չասաց իր որդուն, ամենևին չը համոզեց նրան՝ չանել իր ընտանիքի համար այդ դժբաղդ քայլը, բայց նրա կանգնուածքը այլևս ուղիղ չէր, նրա գլուխը այլևս բարձր չէր, այլ դէպի կուրծքը ընկած, և երբ ես նրան դիմում էի...

— Պապիկ ջա՛ն, (Զմշկեանները իմ ազգականներն են), պապիկ տէր-տէր ջա՛ն, ինչի՞ ես մէջքդ կեռել, գլուխդ թեքել, ինչ է պատահել...

—Ո՛չինչ, պատասխանում էր նա, ոչինչ, ջանի ջա՛ն, պատուհաս ջա՛ն, չարիկ ջա՛ն, ոչինչ չի պատահել, միայն հիւանդ եմ... և դարձեալ ծոցի գրպանից հանում էր մի նշխարք և այն ինձ տալով շարունակում էր. —երևի մեռնելու ժամը մօտեցել է, ինչ ինձ կեանք պակասի, թող քեզ աւելանայ, իմ որդկերանցն աւելանայ...

Եւ այդ խօսքերը նա այնքան տխուր, այնքան վշտահար էր արտասանում, որ աչքերս լցւում էին արտասուքով...

— Մեռաւ Տէր-Յարութիւնը... մեռաւ ու նրա բերանը մընաց բաց... որքան աշխատեցին փակել բերանը, չը կարողացան... Ասում էին, նրա քարոզը կիսատ է մնացել, Աւետարանի ընթերցանութիւնը չէ աւարտել. նա կամեցել է Գէորգին ասել՝ «թատրոն մի խաղա», բացել է բերանը, բայց որդու խաթրը պահելով, ոչինչ չէ արտասանել, և բերանը թողել է բաց, որպէս զի որդին ինքը հասկանայ...

Ինչ և իցէ այս առաջին հարուածն էր, որ տուեց հայ թատրոնը, հայ բեմը Գէորգի ընտանիքին ու այնուհետև թէ ինքը և թէ իր ընտանիքը անվերջ հարուածներ էին ստանում հայ բեմից, հայ հասարակութիւնից, հայ դերասան և դերասանուհիներից, հայ մամուլից, հայ գրագատից (ռեցէնզենտ)... և ես ինքս որքան նրան հարուածել եմ Մշակի մէջ, բայց և այնպէս թէ այն ժամանակ և թէ այժմ միշտ խոնարհուել եմ նրա վեհութեան, նրա բարձրութեան, նրա տաղանդի և հանճարի մեծութեան առաջ...

(Կըշարունակուի) Յ. Տէր-Գրիգորեան

## ԾԱՂԿԵՓՈՒՆՋ ԱՐԵՒԱՆ ԴԱՇՏԵՐԻՑ

### II

### Մինչեւ Ընդհարումները

Պ. քաղաքում, կայարանից բաւական հեռու, մեր էշալօնը կանգ է առնում և վագոնները դատարկւում, որովհետև այդտեղից մենք առաջ ենք շարժուելու ոտով։ Մօտենում է ինձ բժ. Կոզանը և առաջարկում՝ գնալ կոմենդանտի վարչութիւնը, գերի աւստրիացիները տեսնելու։

Չորս հոգի են սրանք, նստած յարդի վրայ, կապտա-մոխրագոյն համազգեստով, ճտաւոր կօշիկներով, ուրեմն, հեծելազօրի

*զինուորներ, որովհետև հետևակ զօրքը սովորական կօշիկներ է կրում։ Մեզ տեսնելիս, միջազգային արիւնոտ դրամայի այս առաջին կարապետները շուռ են գալիս և ամօթից երեսները ծածկում։*

*— Այս տեսակ ինքնասիրութիւն ունեցող թշնամու հետ կռուելն այնքան էլ հեշտ չէ լինելու, թոթովում է բժիշկը և թեւից քարշ տալիս։*

*— Այդ պատուասիրութեան տէր հակառակորդի հետ կուրծք կրծքի տալը հետաքրքրական է, մտածում եմ ես ու հետևում նրան։*

*Շուկան, ուր յայտնուեցանք մենք, լի էր զինուորներով։ Թէև օրը շաբաթ էր, և ամեն տեսակ աշխատանք խստելի ուղղափառ հրէաների համար, այնուամենայնիւ սրանք իրենց խանութների կիսաբաց դռներով, որպէս թէ հարևաններից գաղտնի, ներս էին թողնում պատահական տասնեակ յաճախորդներ, վերցնում նրանց վերջին կոպէկը ու ճանապարհ դնում։ Մօտիկ ապագայի հաւանական տիրոջ անակնկալների տրամադրութեամբ տարուած զօրքերը խիստ շռայլ էին ու վատնող, իսկ ամեն տեղ և ամեն պայմաններում ընչաքաղց Սիօնի որդիք այդ տրամադրութիւնը շահագործելու շատ վարպետ ու հմուտ։ Ընդ սմին արևմտեան հարաւից դառնաշունչ հիւսիս տարագրուած Իսրայէլի այս չարքաշ զաւակները չէին խորշում օրինական տուր և առով նուիրագործուած այս կողոպուտի միջոցին այնպիսի հարցեր տալ նոյն իսկ մեզ, որոնցից ուրիշ հոտ էր փչում։ Այդ կողմից կանայք հօ ուղղակի անտանելի էին, տպաւորութիւնը վերին աստիճանի բացասական ու ճնշող էր։ Մի հարց շիկացած երկաթի պէս այրում էր ուղեղս. արդեօք քաղաքական իրաւազրկութիւնն էր այլանդակել հրէաների բարոյական պատկերը, թէ՞ այդ իրաւական սահմանափակումները հէնց նպատակ ունէին կռուելու միջոցների մէջ խտրութիւն չդնող հրէութեան դէմ։ Յիշեցի Փարաւոնների դարը, միտ բերի Հռոմի տիրապետութեան շրջանը, այդ ժամանակներում անգամ հրէաների համար սահմանուած բացառիկ օրէնքները…*

*Գրում եմ սահմանագլխի Կ. գիւղից, որտեղ մի ամբողջ օր հանգիստ ենք առնելու երեք օրուայ արշաւից յետոյ։ Ճանապարհին ամեն տեղ մեզ դիմաւորում, ընդունում են սրտաբաց հիւրասիրութեամբ։ Կանայք առանձին հաճոյքով մեզ համար կերակուր են պատրաստում, հաց թխում և բացէբաց հրաժարւում մեր առաջարկած դրամական նուէրներից։ Զինուորների տրամադրութիւնը հրաշալի է, կարծես նրանք գնում են ոչ թէ մահաբեր պատերազմի դաշտ, այլ հարսանիք։ Մեր ճանապարհորդութեան ընթացքում գեղջկուհիներն ամենուրեք այնպէս են նրանց պատւում, գուրգուրում և խնամում, ասես երկար անջատումից յետոյ տեսնում են իրենց հարազատներին։ Գիւղացիներից վերցրած բոլոր իրերի համար վճարում են։ Հազուագիւտ յանցաւորներին նախատում, պատժում են հէնց իրենց ընկերները։*

*Ժողովրդի ու զօրքերի հոգևոր կապը՝ միութիւնը ակներև է։ Այս պայմաններում կռիւը զբօսանք է, մահուան զինակցութիւնը՝ թեթև։ Այդ բանն աւելի խոր զգացի ես այսօր առաւօտեան եղած զօրահանդէսին, երբ զօրավար Բրուսիլովը խրախուսանքի խօսքեր ուղղեց զօրքին։ Պարտքի նուիրականութիւնը շեշտող նրա հասարակ ճառը ոգևորութեան այնպիսի փոթորիկ առաջ բերաւ մեր շարքերում, որի նմանը ես տեսայ միայն Պետրոգրադում, մանիֆեստի օրը, երբ Կայսրը պալատի պատշգամբից ողջունեց Ալէքսանդրեան գրանիտէ հոյակապ սեան շուրջը խռնուած տասնեակ հազարաւոր ամբոխին։ Մրջիւնների բանակ յիշեցնող այդ ստուար հոծ բազմութիւնը, առանց դասակարգերի, սեռի և հասակի խտրութեան, ծունկ խոնարհած իր Միապետի առաջ՝ հիացմունքից ուռճացած կրծքով անվերջ «Ովսաննա» էր երգում Նրան։ Պատկերը թէ մայրաքաղաքում և թէ այս խղճուկ գիւղում այնքան վեհ էր և ազդու, որ թւում է ինձ, եթէ Վիլհելմը ներկայ լինէր դրան, չէր վարանի մենամարտի իր թաշկինակը յետ վերցնելու…*

*Ասենք ենթադրութիւնները աւելորդ են. շուտով արիւնոտ դէպքերը ինքեան կպարզուեն, թէ որքան ճապոնական տխրահռչակ պատերազմից յետոյ յառաջադիմել է ռուս զինուորականութիւնը, որպիսի անպարտելի տարերային ոյժ է մ ի ա ց ա ծ Ռուսաստանը։ Ցամենայն դէպս, թող մեզ յարգացոյցներ, օվացիաներ սարքող ժողովուրդը լաւ իմանայ, որ Հայրենիքի պատիւը մեզ համար վեր է ամեն ինչից, և մենք սրբութեամբ կը կատարենք նրան տուած մեր երդումը։*

*Վ. Արմէն*

---

## ՊԵՏԱԿԱՆ ԿԵԱՆՔ

*Բարձր կառավարութեան մէջ մի խոշոր փոփոխութիւն տեղի ունեցաւ այս շաբաթ։ Մինիստրների խորհրդի Նախագահ Գորեմիկինը բարձրագոյն հրամանով արձակուեց իր պաշտօնից, իսկ նրա տեղ պաշտօնի կանչուեց Պետական Խորհրդի անդամ Շտիւրմէր։ Այս փոփոխութիւնը, ինչպէս կարծում են, առանձին մի ազդեցութիւն չի ունենայ ներքին քաղաքականութեան վրայ։*

*Դեռ հաստատ յայտնի չէ նոյն իսկ, թէ երբ կը բացուի Պետական Դուման և ինչ բնաւորութիւն կունենայ նրա նստաշրջանը. վերջին տեղեկութիւններին նայելով, հաւանական է որ Դումայի բացումը նշանակուի փետրուարի 5-ին։*

---

# Մահացուցակ

### ՆՈՐԱՅՐ ԲԻՒԶԱՆԴԱՑԻ

*Հեռագիրը լուր բերեց, որ Վենետիկում վախճանուել է Նորայր Բիւզանդացին։*

*Այս մահը մի ծանր կորուստ է հայագիտութեան համար։ Հանգուցեալը իր երկարամեայ լուրջ աշխատասիրութիւններով վաստակել էր պատկառելի անուն և հայ բանասիրութեան մէջ յարգուած ու հեղինակաւոր մի գործիչ էր։*

*Նորայր Բիւզանդացին ծնուել է Կ. Պոլսում և մանկութեան հասակից դաստիարակուելով Վենետիկի Մխիթարեան վանքում, վարդապետ ձեռնադրուեց ու դարձաւ միաբանութեան ուսումնական անդամներից մէկը։ Սակայն նա հեռացաւ վանքից և թողնելով կուսակրօնութիւնը, ամուսնացաւ Կ. Պոլսում մի շվէդուհի լուսանկարչի հետ։ Այդ ամուսնութեան հետևանքով նա թողեց իր ծննդավայր Կ. Պոլիսը և իր ամուսնու հետ երկար ժամանակով բնակութիւն հաստատեց Շուեդիայի Ստոկհոլմ մայրաքաղաքում։ Կնոջ մահից յետոյ նա հեռացաւ Ստոկհոլմից, բայց այս անգամ բնակութեան տեղ ընտրեց Վենետիկը, ուր ապրում էր համեստ, նուիրուած իր գրական աշխատանքներին։*

*Հայ քրտնաջան բանասէրը վախճանուեց խորին ծերութեան մէջ։*

*Նրա գրական աշխատութիւնների մէջ նշանաւոր է ամենից առաջ ֆրանսահայ բառարանը — մի ընդարձակ և գեղեցիկ գործ, որ չունէր իր նախընթացը և որ օրինակ դարձաւ ուրիշ այդ տեսակ բառարաններ կազմողների համար։ Հայ բանասիրութեան մէջ նա առանձնապէս աչքի ընկնող ծառայութիւններ արել է նրանով, որ հայ մատենագիրների բնագրերը (տեքստը) ուղղելու, վերականգնելու և լուսաբանելու համար մեծամեծ փորձեր է արել յաջողութեամբ։ Այս տեսակի աշխատանքներ շատ են և ցրուած են զանազան պարբերական հրատարակութիւնների մէջ։ Առանձին*

պատմական- քննադատական գործերից աչքի է ընկնում նրա ընդարձակ ուսումնասիրութիւնը Կորիւնի մասին։

Հանգուցեալը թողել է և շատ ձեռագիր աշխատութիւններ, որոնք, հարկաւ, գանձ են հայ բանասիրութեան։

Նշանաւոր հայ գիտնականի մահուան առիթով յայտնում ենք մեր խորին վիշտը։

---

## ՅՈՎՍԷՓ ԱԹԱՐԲԷԳԵԱՆ

Կոյր ճակատագրին հաճելի էր, որ այնքան ողբերգական ձևով կնքէր իր մահկանացուն Յովսէփ Աթարբէգեանը։

Հանգուցեալը կեանքում լուսաւոր դէմքերից մէկն էր. աւարտելով Թիֆլիսի I արական գիմնազիան ուղևորւում է Հոհենհայմ, այնտեղի հռչակաւոր ճեմարանում (ակադեմիայում) գիւղատնտեսութիւն ուսումնասիրելու։ Ուսումն աւարտելուց յետոյ մի առ ժամանակ մնում է Վիւրտենբերգի Շտուտգարտ մայրաքաղաքում, ուր շնորհիւ իր տաք բնաւորութեան, ազնիւ հակումների և նոր գաղափարների հանդէպ ունեցած դիւրընկալութեան միաժամանակ հոգու բուռն թափով նւիրւում է ընկերվարական (սոցիալիստական) ուսմունքին։ Հայրենիք վերադառնալով Աթարբէգեանը նախընտրում է գործնական բարեփոխման ուղին, գերադասելով այն խօսքի պրոպագանդային։ Կովկասում նրա ամբողջ կեանքը նուիրուած է եղել գիւղին և հողին։ Շնորհիւ անսահման եռանդի և գիտական պատրաստութեան, համեմատաբար կարճ ժամանակաշրջանում խոպան և անմշակ հողը կարողանում է դարձնել մի մշակուած կալուածք։ Նա առաջինն է գիւղացիներին սովորեցնում խաղողի հիւանդ վազերի բուժումը, սերմափոխութեան արդիւնաւոր կիրառումը, արուեստական անտառների օգտակարութիւնը. յաջող կերպով լուծում և կարգաւորում է հայ և թուրք գիւղացիների ջրի մատակարարութեան խնդիրը. իր սրտին շատ մօտ ընդունելով գիւղացիների կրթական և բժշկական օգնութեան խնդիրները, բաց է անում դպրոցը, հիւանդներին հասցնում է բժշկական օգնութիւն։ Մի քանի գիւղեր, ինչպէս Փարաքարը, Վարմազիարը իրենց ներկայ բարօրութեամբ մեծապէս նրան են պարտական։ Նա մնաց գիւղում և գործեց գիւղում, որով և մեծ զարկ տուաւ նրա առաջադիմութեանը։

Պակաս օժանդակութիւն չէ ցոյց տուել Աթարբէգեանը նաև հասարակական այլ հիմնարկութիւնների. էջմիածնի անջուր հողերի ոռոգման գործը գլուխ բերելու համար, նա ահագին եռանդուն մասնակցութիւն է ունեցել Երևանի ջրաբաշխական և բամբակի մշակութեան վերաբերեալ խորհրդակցութիւնների մէջ. նախատեսելով Սոփիարտին տուած կոնցեսսիայի կործանարար հետևանքները Երևանի նահանգի պտղաբերութեան տնտեսական վիճակի համար, Երևանի կողմից պատգամաւոր է գալիս հանգուցեալ Փոխարքայի մօտ, միջնորդութիւն խնդրելու, ոչնչացնելու այդ կոնցեսիան։

Աթարբէգեանի Կարսում ունեցած գործունէութիւնը աւելի միջադէպի բնոյթ է կրում։ Ռուս-Տաճկական պատերազմին որպէս պահեստի սպայ կանչուած լինելով Կարս ծառայութեան, սիրւում է ժողովրդից և ընտրւում դպրոցի հոգաբարձու։ Այնուհետև ընտրուելով II Պետական Դումայի անդամ Կարսի գիւղական շրջանից, նա մեծ ճիգ ու ջանքեր է թափում օրէնսդրական կարգով անցկացնելու Կարսին քաղաքային ինքնավարութիւն տալու խնդիրը։

Աթարբէգեանի ամբողջ կեանքը եղել է մաքառում. մաքառում բնութեան, շրջապատի տգիտութեան դէմ, և վերջը այդ հազուագիւտ եռանդի և նուրբ բարոյական ըմբռնման տէր անձը զոհ դարձաւ մտքի յոգնածութեան և հոգեկան մթագնացութեան։ Նա յաճախ, յուսահատական բոպէներին, սիրում էր կրկնել Համլէտի խօսքերը "o, mocht' es zergehen, aufgelöst in Tau, dies feste, allzufeste Fleisch" (Ո՜հ, երանի լուծուէր և դառնար մի ցող, պինդ և ամրակազմ այս իմ մարմինը). այդպէս էլ եղաւ. հանգիստ նրան։

Ա. Օլթեցեան

## ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ ՏԱՐԵԳԻՐ

### Կ. Հ. Բ. Ը.- ԹԵԱՆ ԿԻՑ Հ. Կ. ԿՈՄԻՏԷԻ ՅՈՒՆՈՒԱՐԻ 18-Ի ՆԻՍՏԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻՑ

—Ախալքալաքի Կ. Հ. Բ. Ը.- թեան ճիւղին տալ 2000 ռ. գաղթականների կարիքների համար։

—Կազմել ծրագիր պահեստի և սպառողական խանութներ բանալու գաղթականների համար Դանձակի, Երևանի և այլ նահանգներում։

Տալ Թիֆլիսի հայ եկեղեցիների միաբանութիւնների և հոգաբարձութիւնների յանձնաժողովին որբանոցի ապակեծածկ (շուշաբանդ) շինելու 545 ռ. 87 կ. և 300 ռ. որբերի համար տաք շորեր գնելու։

—Ուղարկել Նախիջևանի որբանոցի համար 2000 ռ. հագուստի, անկողնի և այլ պէտքերի համար։

Նոր-Բայազէտի որբանոցի համար գնել տաք շորեր։

— Գնել 4500 ռ. բուրդ արհեստանոցի համար։

—Գաղթականների համար գործ հայթայթող մասնաժողովին (կոմիսիային) տալ 500 ռ. փախստականների համար մանր աշխատանքներ սկսելու. միենոյն մասնաժողովի միջոցով 1000 ռ. Վանեցի ոսկերիչներից ընկերութիւն կազմելու և գործ սկսելու համար։

* * *

Փախստականներին գործ հայթայթող «Աշխատանքի Բիւրօ»-ում արձանագրուել են 355 տղամարդ, որից 91-ը գործ են գտել 63-ը Բիւրոյի ջանքերով և միջոցներով։ Անգործ մնացել են 264 հոգի, որոնցից զանազան պարապմունքների տէր 69 հոգի, գիւղացի հողագործ 66, առևտրական 39, ոսկերիչ 17, կօշկակար 14, ուսուցիչ 16, դպրոցական (թերուսում) 11, երկաթագործ 10, դրագիր-հաշուապահ 7, խոհարար 4, դերձակ 4, հիւսն 4 և ջուլհակ 3։ Խնդրւում է բոլոր գործատէրերին և տնատէրերին կարիք ունենալու դէպքում դիմել հետևեալ հասցէով— Երևանեան հրապարակին կից, Պուշկինսկի պասաժ № 25։

* * *

### Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ
### Ն Ո Ւ Է Ր Ն Ե Ր

Կ. Հ. Բ. Ը-թիւնը շնորհակալութեամբ ստացել է.

— Գ. Ի. Մնացականեանից յօգուտ փախստականների 3 ռ.

— Թիֆլ. փոխադարձ վարկի ընկ. ծառայողներից յօգուտ փախս. 15 ռ. 62 կ.

— Բ ո ղ ա յ ի ր ո յ ի ց հեռագրով ստացուած է Նիկոլայ Ալէքսանդրովիչ Անտոնովիչից 420 ռ.

* * *

Խ մ բ ա գ ր ո ւ թ ի ւ ն ս շնորհակալութեամբ ստացաւ Բաթումից արժանայ. Մեսրոպ ա. ք. Մելեանի միջոցով Մ ա ր դ ո ւ լ ի հ ա յ բ ա ն ո ւ ո ր ն ե ր ի ց յօգուտ հայ փախստականների 36 ր.։

Նուիրատուներն են

Վարդան Մուրատեան, Յակոբ Փանոսեան և Լևոն Սիմոնեան, իւրաքանչիւրը 1 ր. 80 կ., Աւետիս Սարգսեան, Նազար Մարգարեան, Շահրազ Սարգսեան, Կանչօ Սահակեան, Սարգիս Մարտիրոսեան, Յակոբ Գրիգորեան, Սեբոր Ալէքսանեան, Մկրտիչ Վարդանեան, Բալաբէկ Մարտիրոսեան, Անուշաւան Յարութիւնեան, Մարգար Սիրունեան, Տօնօ Պետրոսեան, Խաչատուր Գրիգորեան, Հայրիկ Մուրատեան, Մկրտիչ Ասլանուրեան, Յարթէն Մուրատեան, Մուշեղ Աւետեան, Մուրատ Եղիազարեան, Միսաք Վարդանեան, Մուշեղ Վարդանեան, Աբրահամ Վարդանեան, Խաչիկ Յովսէփեան, Ալէքսան Մանուկեան, Յովհաննէս Ասմրեան, Յարութիւն Ղազարեան, Վարդան Թումասեան, Ասլան Նարօեան, Յա՛ոբ Խուրշուդեան, Գերասիմ Յակոբեան, Համբարձում Յովհաննիսեան և Միքայէլ Գրիգորեան՝ իւրաքանչիւրը 1 ր., և Մկրտիչ Զիլֆեան 50 կ., ընդամենը 36 ր., առաջուայ ունեցածների հետ 107 ր 60 կ. յանձնեց Կ. Հ. Բ. Ը-թեան։

* * *

### Ճ Ի Ւ Ղ Ե Ր

Թ ե լ ա ւ ի Կ. Հ. Բ. Ը. ճիւղից ստացուել է յօգուտ փախստականների որբերի 115 ռ., որպիսի գումարը կազմում է ճրագալոյցին «Աւետիս» շրջագայելուց։

### ՆՈՒԷՐՆԵՐ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ՕԳՏԻՆ

— Բաղաքագլուխ պ. Ա. Խատիսեանի միջոցով 14,921 ռ. 25 կ. Մոսկուայի անգլիական կոնսուլից։

— Դարձեալ պ. Խատիսեանի միջոցով 2,878 ռ. 11 կ. Վանի որբերի համար։

## Քրոնիկոն

Կոմս Վորոնցով-Դաշկովի մահուան առթիւ Կ. Հ. Բ. Ընկ. խորհուրդն ուղարկել է հետեւեալ ցաւակցական հեռագիրը կոմսուհի Վորոնցովա-Դաշկովային.

«Կ. Հ. Բ. Ը-թեան խորհուրդը խորապէս վշտացած իւր բարձըր պատուաւոր անդամ կոմս Իլարիոն Վորոնցով-Դաշկովի մահուամբ, յայտնում է Ձերդ Մեծութեանը և Ձեր ընտանիքին անկեղծ ցաւակցութիւն։ Թող յաւիտեան մնայ յիշատակը Թանկագին կոմսի, որ բառի արժանւոյն վայելում էր ընդհանուրի սէրը Կովկասում իւր խելացի և մարդասէր կառավարութեամբ»։

Խորհրդի նախագահ պ. Ս. Յարութիւնեանը ստացաւ կոմսուհի Եղիսաւէտա Վորոնցով-Դաշկովից հետեւեալ պատասխանը. «Սրտանց շնորհակալ եմ Ձեզնից և Հայոց Բար. Ը-թիւնից, ինձ և իմ ընտանիքին արտայայտած ցաւակցութեան համար մեր ծանր վշտի առթիւ»։

***

Ճ ա ք ա ր Պ ա ր ս կ ա ս տ ա ն ի հ ա մ ա ր. Փոթիում ստացուել է 130,000 պուդ շաքար Պարսկաստան ուղարկելու համար։

Եւ որովհետեւ Անդրկովկասում այժմ շաքարի սով է, ուստի միջոցներ են ձեռք առնուած տեղական ժողովուրդին վաճառելու։

***

Գ. Ա ղ ի լ խ ա ն ո վ ի և ո ւ ր ի շ վ ա ճ ա ռ ա կ ա ն ն ե ր ի բ ա ն տ ա ր կ ո ւ թ ի ւ ն ը. Յունուարի 15-ին շրջանային դատարանի դատախազի գրութեամբ ոստիկանապետը կալանաւորեց և ուղարկեց Մետեխի բանտը Թիֆլիսի յայտնի գործարանատէր Գ. Աղիլխանովին, վաճառականների աւագ Ա. Միլեանին և ուրիշներին, որոնք մեղադրւում են գինուորական մահուղեղէն ապրանքների թըռացման համար։

Գործը յանձնուած է շրջանային դատարանի առանձին կարեւոր գործոց քննիչ Ժուկովին։

***

Դ ա ս ա խ օ ս ու թ ի ւ ն. Այս շաբթուայ ընթացքում Թիֆլիսում տեղի ունեցան դասախօսութիւններ. Երկու դասախօսութիւն կարդաց I-ին Պետական Դումայի նախագահի օգնական, ուսուցչապետ Ն. Ա. Գրեդեսկուլը «Պատերազմը և Ռուսաստանի ներքին կեանքը» նիւթի մասին։ Իսկ մի դասախօսութիւն կարդ. Վ. Բրիւսովը «Հայաստանի պատմական շրջանները և հայ բանաստեղծութեան զարգացումը»։

***

Կ. Հ. Ուսուցչական Միութիւնը քաղաքային խորհրդարանի դահլիճում ամսիս 17-ին ունեցաւ ընդհանուր ժողով։ Կենտրոնական վարչութեան նախագահ պ. Ս. Աւետեանի առաջարկելով ժողովը յոտնկայս յարգեց վաղամեռիկ ուսուցչուհի օր. Խօսրովիդուխտ Ղազարեանի յիշատակը։

Ընդհանուր ժողովի նախագահ ընտրուեց պ. Ստ. Կանայեանցը, իսկ քարտուղար՝ պ. Յ. Ազարարը։ Վարչութեան անդամ պ. Ա. Ստամբոլցեանը զեկուցում կարդաց 1915 թուականին հրատարակուած եկեղեցական-ծխական դպրոցների ժամանակաւոր ներքին կանոնադրութեան մասին, գտնելով ընդհանրապէս շատ բարեփոխուած. իսկ վարչութեան անդամ պ. Երզնկեանը իւր զեկուցմամբ շեշտեց յատկապէս մի քանի կէտեր, որոնք կարող են ոչ-ցանկալի հետեւանքներ ունենալ։ Ժողովը միահամուռ ցանկութեամբ միաձայն ընտրեց մի յանձնաժողով, որ տպագրուած կանոնադրութիւնը համեմատի էջմիածնի կենդրոնական ժողովի նիստերում ընդունուած կանոնադրութեան հետ և զեկուցանի Միութեան ընդհանուր ժողովին. սակայն այս պարտականութիւնը վերջը յանձնուեց կենդրոնական վարչութեան, որին յանձնարարուեց նաև աշխատելու, որպէսզի թեմական-դպրոցական խորհուրդները վերականգնուեն։

Այնուհետև բաց քուէարկութեամբ վարչութեան փոխանդամներ ընտրուեցին պ. պ. Տօնեան, Գ. Ղազարեան, Ա. Թումանեան, պ. Արծրունի և օր. Ցիցիկեան և վերստուգիչ յանձնաժողովի անդամներ՝ պ. պ. Ա. Յովհաննիսեան, Պետ. Յովհաննիսեան և Տէր-Անդրէասեան։

### ՀԱՅ ԳԱՂՈՒԹՆԵՐ

Մոսկուայում կազմուել է Մոսկուա քաղաքի հայ ինժեներների ընկերութիւն, որի նպատակն է՝ 1) Ըստ հնարաւորութեան նըպաստել Հայոց մէջ արուեստական (техническій) ուսման. 2) Օգնել Մոսկուայում հայ ինժեներներին և նրանց ընտանիքներին, նոյնպէս թոշակ տալ արուեստաւոր- աշակերտներին. 3) Հրատարակել արուեստի բոլոր ճիւղերի խնդիրների մշակութեան վերաբերեալ ժողովրդականացրած գրքոյկներ. 4) Օժանդակել ժողովելու, պահպանելու և ուսումնասիրելու Հայոց պատմութեան և կուլտուրայի հետ կապուած յուշարձանները և վաւերագրերը և այս նպատակով ունենալ Մոսկուայում թանգարան և մատենադարան. 5) Խորհրդակցական մասնակցութիւն ունենալ Հայոց այն զանազան հասարակական կազմակերպութեանց մէջ, որոնց նպատակն է՝ իրագործել իր ժողովրդի ազգային- կուլտուրական ձըգտումները։

Սրտանց համակրելով մի այսպիսի նոր հաստատութեան և յաջողութիւն ցանկանալով, չենք կարող չըդիտել, որ հեռաւոր հիւսիսում, Մոսկուայում, մի թանգարան հիմնել և այնտեղ հաւաքել պատմական և կուլտուրական յուշարձաններ մենք համարում ենք անիրաւ և ուղղակի վնասակար, մանաւանդ ազգային տեսակէտից. այլ բան է մատենադարանը, որ շատ ցանկալի է։ Դիտելու է միաժամանակ, որ վարչութեան անդամների և փոխանդամների և վերաքննիչ մասնաժողովի բոլոր 11 ազգանուններից միայն մինը կրում է հայ ազգանուան վերջաւորութիւն։

### ԳԱՒԱՌ

Ն ո ւ խ ի. — Նուխուց մեզ հաղորդում են, որ փոխանորդ բարձրապ. Եղիշէ վարդապետը եկեղեցական- դպրոցական գործերով վիճակիս Ղայսրաշ գիւղում գտնուելով, բացատրել է ժողովրդին Կ. Հ. Բ. Ը.-թեան բազմակողմանի օգուտները և նշանակութիւնը։ Ժողովուրդը մի յայտարարութեամբ խնդրել է բանալ Կ. Հ. Բ. ընկերութեան ճիւղ։

## Գեղարուեստ

### ԵՐԿՈՒ ԵՐԷՑ

(Հայ և վրացի*)

Բ

Մթնած էր քիչ։ Թէոֆիլը եկեղեցու գաւիթը մանելով նկատեց գերեզմանաքարի վրայ փայտը ձեռին մի մարդ նըստած։ Դա առաջ վազելով աջն առաւ ու խօսեց.

— Տէր հայր, ես քեզ եմ սպասում, խոստովանք ունեմ, ով գիտէ յոգնած ես, ուզում ես շուտ տուն գնալ։

— Յոգնած եմ, բայց վնաս չունի, պատասխանեց բարի երէցը, կը լսեմ խոստովանքդ, ոչով չըկայ, ասա, տեսնեմ, ինչ ունես։

*) Տես «Համբաւաբեր» № 4։

—Տէր հայր, ես Նարին դալայի այն կողմի գիւղերից եմ, լսեցի, որ մի հովիւ մարդու Թիւրքերը բռնել են ու էգուց պիտի դադար անեն սպանուած Թիւրք զինուորի պատճառով։

—Յետո՞յ, ի՞նչ կայ, եղբայրդ հօ չէ՞, հարցրեց երէցը կարեկցաբար։

—Ոչ, տէր հայր, բռնուածը ինձ հեռու ազգական էլ չէ։

—Ուրեմն ի՞նչ ես ուզում։

Գիւղացին մնաց լուռ. երէցը մթան մէջ չէր նկատում նրա տանջուող դէմքը։ Ներքին յուզմունքին գիւղացին մի կերպ յաղթելով խօսեց.

—Տէր հայր ջան, եղբայրս չէ, բայց չէ՞ որ մեղք է, երբ բոլորովին զուր է պատժւում. չէ՞ որ նա էլ վրացի է։

—Ուրեմն դու գիտե՞ս, որ նա անմեղ է։

—Հաստատ գիտեմ, տէրտէր ջան։

—Ինչի՞ց գիտես։

—Ես իմ աչքերով սպանողին տեսայ, նա ուրիշ մարդ էր, տոպրակ ունէր ուսին։

Այս լսելով երէցը յոգնածութիւնը մոռացաւ ու հետաքրքրուած հարցրեց.

—Յետո՞յ։

—Թուրք զինուորը անցորդին տեսնելով մօտեցաւ, որ կողոպտի. գիւղացին բարձրահասակ, շատ նեղութիւն քաշած մարդ էր, չէր ուզում արիւնի գնով ձեռք բերած ճոթ ու կտորը, որ կնկայ ու 5 երեխանց համար էր տանում, յօժարակամ տալ աւազակին։ Թուրքը գիւղացու յամառութեան վրայ բարկացած սկսեց նրա հաւատն ու օրէնքը հայհոյել և երբ ուզում էր դաշոյնի ույժը փորձել, գիւղացին վաղուց բռան մէջ պահած քարը ամուր վրայ բերեց նրա ճակատին ու փշրեց։

—Այդպէս մանրամասն ի՞նչպէս տեսար, հարցրեց սարսափած երէցը, ո՞վ էր այդ մարդը, ո՞ւր գնաց։

—Տեսայ որ այդ մարդը սարալանջի կածանով գնում էր իրա գիւղը, բայց շուտ փախաւ անտառը, որ գլուխն ազատ պահի մինչև հանդարտութիւն ընկնելը. երբ լսեց, որ Թուրքերը իրա տեղ մի անմեղ վրացու մեղադրելով սպանելու են, անչափ ցաւեց ու խղճահարուեց։ Չըգիտէր, ինչ անի. արդեօք թող տայ, որ մի ամուրի մարդ կորչի, թէ՞ ինքը գնայ պատիժը կրի անտէր թողնելով կնոջն ու 5 երեխաներին։ Գնաց որ խորհուրդ հարցնի։

—Հապա ո՞ւր է այդ մարդը, շտապ հարցրեց երէցը։

—Ահա այստեղ քո առաջ կանգնած է, տէր հայր ջան, ասաց գիւղացին զղջական ձայնով։

Տէր Թէոփիլը մնաց մարդասպանի առաջ քարացած կանգնած. աչքերը սևեռել էր նրա վրայ, բայց մթան մէջ դիմագծերը պարզ չէր նշմարում, որ գուշակի թէ ինչ է անցնում նրա հոգու մէջ։

— Տէր հայր, շարունակեց գիւղացին, իմ պարտքս էր խոստովանել յանցանքս, քեզ վստահանալով ասացի արածս ու սիրտս թեթևացաւ, այսուհետև դու գիտես, ինչպէս խիղճդ տալիս է, այնպէս վարուիր։

Տէր Թէոփիլը մտածում էր՝ այս մարդը եթէ չըսպանէր, Թիւրքը սրան սպանելու էր և ունեցածը կողոպտելու։ Սա սպանութիւն արել է ակամայ ու սրտով այնքան ազնիւ է երևում, որ ուրախութեամբ կը գնայ պատիժը կրելու, եթէ բազմանդամ ընտանիք չունենար։ Ես ինչպէս կարող եմ սրա մեղքը չըներել։ Սա խոստովանելով իրա մեղքը գցեց իմ վրայ, հոգուս պարտքն է նրա գաղտնիքը պահել։

Բարի երէցի մտածութեան թելն ընդհատեց գիւղացին.

— Տէր հայր, այժմ դու գիտես, մեզանից ո՞րին կամենում ես ազատիր. թէ ես և թէ բռնուածը վրացի ենք և քո հօտի որդիները։ Ես գնում եմ, վաղը դարձեալ կը գամ, որ վճիռդ լսեմ։

Նա շուտ անցաւ պարսպի այն կողմը—Դարեթ-Ուրան, և այնտեղից բարձրացաւ դէպի Մամա-Դաւթի շրջակայ անտառը։ Տէր Թէոփիլը դաւթում մի քանի րոպէ էլ մնաց կանգնած մտածելիս։ Ի՞նչ անէր, անմեղը ամուրի, մեղաւորը ընտանիքով ծանրաբեռնուած, ո՞րին ազատէր, ո՞րին թողնէր։

Այս մտածմունքների մէջ տուն գնաց յիշելով Աւետարանի խօսքը՝ «բարի հովիւը կեանքը պիտի դնի ոչխարների համար». այո՛, պիտի ազատել անմեղ դոհին, վճռեց քաջ երէցը ու հանգիստ պառկեց։

Թիւրքերի դիւանխանեան բաղնիսների մօտի մեծ մզկիթին կից էր։ Առաւօտից սիւննիների խաժամուժը խռնուել էր հրապարակում դանլի գեավուրի դադարի*) հանդէսը տեսնելու։ Դիւանխանայում մինդարների վրայ ծալապատիկ նստած էին մոլլա դատաւորները, գլխաւոր դադին նստած էր մէջտեղը բարձի վրայ։ Տէր Թէոփիլը արևելեան կողմի Գեանջու ալաղափիով ելնելով մզկիթի հրապարակը, առանց կանգ առնելու դիմեց դիւանխանեան ու ներկայանալով դատաւորներին թարգմանի միջոցով խօսեց.

— Եկել եմ խոնարհաբար յայտնելու, որ այդ մարդն անմեղ է։

— Ի՞նչպէս, բացականչեցին մոլլաները։

— Ես հաստատ տեղեկութիւն ունեմ, որ պահակի զինուորին նա չէ սպանել. բարոյական պարտքս համարեցի վաղօրօք ձեզ յայտնել, այսուհետև դուք գիտէք, եթէ խիղճներդ կըտայ, կորցրէք մի անմեղ հոգի։

— Բայց ո՞վ է սպանողը, քէշիշ բաբա, եթէ սա չէ, հարցրեց ծերունի դադին։

— Այդ չեմ կարող ասել, լուրջ դէմքով պատասխանեց վրացի երէցը, բայց երդւում եմ սուրբ կարգովս, որ դա չէ սպանողը, այս գործում դա բոլորովին անմեղ է։

— Քէշիշ բաբա, նորից խօսեց ծերունի դադին, այս կալանաւորը նոյնպէս երդւում էր, որ ինքը չէ սպանողը, մենք չէինք հաւատում, այժմ էլ ձեզ պէս մի արժանաւոր քահանայ երդումով հաստատում է, որ սա չէ սպանողը, այլ մի ուրիշը։ Այժմ հարցնում եմ վերջին անգամ, եթէ սա չէ, հապա ո՞վ է սպանողը, ցո՛յց տուէք, որ բերենք, դատենք. մեր օրէնքը հրամայում է չըթողնել, որ թափուած արիւնը զուր կորչի։ Եթէ սպանողի անունը չասէք, յանցանքը կը մնայ ձեր վրայ, կը նշանակի, դուք էք սպանողը։

— Հաւատացէք Աստուծուն, որ ոչ սա է սպանողը և ոչ ես, այլ մի ուրիշը, կրկնեց վրացի երէցը։

— Ո՞վ է այդ ուրիշը։

— Անունը չեմ կարող ասել։

— Ինչո՞ւ։

— Ինձ իբրև քահանայի խոստովանք է տուած, իսկ հաւատացած խոստովանքը չեմ կարող բերանից հանել, այլապէս դաւաճանած կը լինեմ իմ սուրբ կոչմանը։

Ծերունի դադին մոլլաների հետ խորհրդածելով որոշեց քահանային էլ բանտարկած պահել, երկու օր ժամանակ տալով մտածելու. եթէ անունը կասի, կազատուի, եթէ դարձեալ կը յամառի, սպանողի փոխարէն դադարը ինքը կը քաշի։

Խաժամուժն այդ որոշման վրայ ցնծալով ցրուեց, որ երկու օրից ետ գայ թամաշայ անելու։

Երկու օր ու գիշեր տէր Թէոփիլին անսուաղ պահեցին գուբի պէս նկուղում, բայց չը կարողացան նրա բերանից լսել սպանողի անունը։ Շարիաթի պահանջման համաձայն վճռեցին գըլխատել։ Դուրսը խաժամուժը հրճուանքով սպասում էր, որ դատապարտեալին յանձնեն եաղուբին—կացնաւոր դահճին։ Հէնց այդ վայրկեանին Գեանջու դռնից դուռգանը ձեռին, սպիտակափառ դէմքով երևաց Բերդի եկեղեցու աւագ երէցը, որին Թիւրքերը էֆէնտի քէշիշ էին կոչում։ Տապ քայլերով մտաւ դիւանխանայ, դատաւորներին ընդհանուր ողջոյն տալուց ետ տաճկերէն խօսեց հետևեալը.

— Բարեկրօն եղբայրներ, ինձ հաղորդեցին, որ Շարիաթի հիման վրայ այստեղ կատարւում է մի անարդար գործողութիւն։

*) Արիւնպարտ անհաւատի պատիժը

Ինձ համար Աւետարանի չափ սուրբ է Ալ-ղուրանը և նրա ամէն մի խօսքը։ Ես հաստատ գիտեմ, որ ձեր Սուրբ գիրքը առանց ապացոյցի արգելում է որևէ մէկին կեանքից զրկել։ Ո՞րն է ձեր ապացոյցը, որ այս վրացին է պահակ գինուորին սպանողը։ Որքան տեղեկացել եմ, սրան բռնել են սուտ կասկածի հիման վրայ։ Գալով արժանապատիւ տէր Թէոփիլին, ես միայն կարող եմ գովել նրա հերոսութիւնը, որ անձը վտանգի ենթարկելով կամեցել է մի անմեղ մարդ ազատել։ Դուք մահուան երկիւղի տակ սպառնում էք, որ նա ոտնատակ տայ իրա եկեղեցու սրբագործուած կանոնը ու գաղտնի խոստովանքը, որ նրան հաւատացել է հոգեւոր զաւակներից մինը, հրապարակ բերի։ Այդ անկարելի է, ես էլ նրա տեղ այդպէս կը վարուէի։ Եթէ մեղաւոր էք գտնում նրան դրա համար, այն ժամանակ ինձ էլ նրա հետ պատժեցէք, որովհետև ես էլ երդւում եմ սուրբ կարգովս, որ սպանողը այդ հովիւը չէ։

Աւագ երէցը նկատեց, որ քրիստոնէական երդումը դրանց վրայ չի ներգործում, ձայնը բարձրացնելով ասաց.

—Երդւում եմ մեծ փեղամբար Մահմէտի անունով, որը բացի Շարիաթից ձեր, ուղղափառ մուսուլմանների համար գրել, թողել է Թ ա ր ի ք ա թ ը—առաքինութեան ուղին, որ նրա միջոցով ձգտէք դէպի Հ ա ք ի ք ա թ ը—ճշմարտութիւնը ու անմիջապէս խորասուզուէք իրերի էութեան մէջ, որ մութ անորոշ բան չը մնայ ձեր իմաստութեան, ձեր խղճի առաջ, հասնէք այս աշխարհի վրայ բարձրագոյն աստիճանին, որ մեծանուն փեղամբարը կոչել է Մ ա ր ի ֆ ա թ։

Ծերունի Ղազին, միւս մոլլաները հիացած էին էֆէնդի քէշիշի ճարտարութեան, խելօքութեան վրայ, բայց դատավճիռ լուծելը դեռ մտքներում չկար։

Աւագ երէցը վստահ ու զիլ ձայնով շարունակեց իրա պաշտպանողական ճառը.

—Մեծափառ փեղամբարը ուղղակի միացած էր Աստուածութեան հետ, նրա բերանից ելած խօսքերը Աստծու խօսքեր էին, նրա հրամանները Աստծու հրամաններ։ Նա էր, որ յայտնագործեց Ալլահի 99 անունները։ Կրկնում եմ, որ սպանողը ոչ այս վրացի հովիւն է և ոչ այս վրացի քահանան։ Եթէ մի վայրկեան կարծում էք, որ այս զառամեալ հասակում կարող եմ սուտ խօսել ձեր պատկառելի դիւանի առաջ, ապա շտապեցէք սրանց փոխարէն իմ գլուխը կտրել տալ, որ մեռնելով կարող լինեմ իմանալ Ալլահի 100-րդ անունը. այդ կը լինի հոգուս համար ամենամեծ երջանկութիւնը։

—Աստաֆիւր Ալլահ, այս էֆէնդի քէշիշի ձեռից պրծնել չի լինիլ. աստաֆիւր Ալլահ (ողորմիր Աստուած), երկար ծոր անելով կրկնեց ծեր Ղազին ու լուծեց դատավճիռը։

Մահից ազատուած վրացի հովիւը երկու երէցների ձեռն ու փէշը համբուրելով գնաց իրա բանին։

—Իսկ ես ինչպէս երախտահատոյց լինիմ քեզ, մեծ տէրտէր, այս անօրինակ բարութեան համար, արտասուալից աչքերով խօսեց վրացի երէցը։

—Դու, իմ հոգեկից եղբայր Թէոփիլ, եթէ ինձ ուրախացնել ես ուզում, շարունակիր բռնած ճանապարհդ՝ սիրել ու տանջուել ժողովրդի համար։ Դու քո ժողովրդի ծոցումն ես ապրում, ես իմ, արի շարունակ անվհատ կատարենք մեր ուխտը, խօսքով ու գործով հասկացնենք, որ իմ և քո ազգի անդամներն իբրև դրացիներ, իբրև քրիստոնեաներ իրար սիրեն և նեղ տեղն իրար թև ու թիկունք լինեն, որ յաւիտեան քաւութեան նոխազ չը դառնան երէկ պարսկի, այսօր օսմանցու ձեռին։

4 Դեկտ.

Բամալեանց Ս.

## ՎԱԼԵՐԻՅ ԲՐԻՒՍՈՎԻՑ

I

Դէպի մարդիկ և դէպի ինձ՝ արհամարհանք մի հուժկու—
Աճում, իշխում է տիրաբար անդունդներումն իմ հոգու.
Էլ ոյժ չկայ՝ սիրել, տանջուել- ոչ որոնում, և ոչ յոյս—
Լոյս— անուրջներ— լոկ՝ ուրուներ, յոյզ ու տենչեր—
սուտ, մշուշ։

Ճշմարտութիւնն արդեօք մէկ օր մեզ կժպտայ լուսաշող,
Անմահ եմ ես, թէ՞ կը կորչիմ խաւարի մէջ սիրտ-մաշող։

Եւ դու, որին տենչում եմ ես—սիրո՞ւմ ես ինձ կաթոգին,
Եւ դեռ պիտի շատ թափառեմ, թէ՞ մօտ է ժամն իմ
վերջին։

Այդ միևնոյն է ինձ համար, ողջն է երազ ու ստուեր,
Կեանքը երկար խուզարկեցի, թափանցեցի գաղտնիքներ։

Եւ գնում եմ բախտիս գերի, որպէս տերև յորձանքում,
Դէպի մարդիկ և դէպի ինձ—արհամարհանք իմ հոգում։

II

Ես տրտում եմ, որովհետև քեզ հետ չեմ մենակ,
Պատուհանից մեզ են նայում երկինքն ու լուսնակ։
Եւ վրդովւում է, պղտորւում հանգիստը մթան,
Լուսաբացին ցրւում խաւարն իմ երջանկութեան։

Ես տրտում եմ, որովհետև դու վաղն այլոց հետ—
Մի փրփրադէզ յորձանքի մէջ կը կորչես անհետ.
Եւ առանց ինձ դու քեզ կզգաս ուրախ ու անդարդ
Եւ նրանց հետ ինձ կմոռնաս դէթ մի ակնթարթ։

Օ՜, թէ քեզ հետ ես լինէի անհաս դղեակում,
Որտեղ մոմերն են արնագոյն լոյսեր արձակում,
Որտեղ գիշեր, վաղն ու այսօր խառնւում են իրար—
Եւ խուլ հեռուից ջուրն է խշշում, խշշում միալար։

Եւ ամենքից, ողջ աշխարհից՝ կտրուած, հեռու,
Մենք երկուսով պատկանէինք միայն իրարու,
Մենք՝ արքաներ, ոտներիս տակ անդունդն անսահման,
Ու տարիներ սլանային օրերի նման։

Գ. Բալաշեան

## Մատենախօսութիւն

«Երաժշտութեան պատմութիւն», Ռիխարդ Ցուքսի. գերմաներէնից փոխադրեց Ս. Մելիքեան, Թիֆլիս, 1916. գինն է 80 կոպէկ։

Այս ձեռնարկը պարունակում է երաժշտութեան պատմութիւնը, հին դարերից մինչև մեր օրերը։ Եւ նկատեցէք, որ բոլոր նշանաւոր ազգերի երաժշտութեան մասին տեղեկութիւններ կան 144 երեսներից բաղկացած այս գրքոյկի մէջ, որ նաև պատկերազարդ է։ Կը նշանակէ՝ առանց կարդալու իսկ դժուար չէր լինի գուշակել, որ անհնար կը լինէր այդչափ նիւթ զետեղել այդքան փոքրաթիւ երեսներում։

Իրօք էլ Ռիխարդ Ցուքսի այս աշխատութիւնը նման է ընդհանուր գրականութեան կամ պատմութեան այն նիհար հատորներին, որոնք անուններ, թուականներ և մի քանի հարևանցի բնորոշումներ անելով շնչասպառ վազում են աշխարհի սկզբից մինչև մեր օրերը, իրենց յետևից քարշ տալով նաև ընթերցողին, որը ինքնաշարժի (աւտոմոբիլի) մէջ նստած ճամբորդի պէս թռչում է երկրէ երկիր, սարից ձոր, դաշտից անտառ՝ ճանապարհին գիւղեր, քաղաքներ, կենդանիներ, մարդիկ, հարսանիք, յուղարկաւորութիւն, լուսին, արև, կարկուտ, անձրև և այլ բազմաթիւ բաներ կայծակի արագութեամբ միայն տեսնելով։ Ինքնաշարժերի

(աստմորիլների) ու սաւառնակների (այէրօպլանների) ազդեցութիւնն է այդ, որ այս կամ այն կերպ հանդէս է գալիս նաև մանկավարժութեան մէջ։

Ի հարկէ Ռիխարդ Ցուքսի հաղորդած տեղեկութիւնները քիչ են և չոր, բայց շատ կարճ ժամանակում այդքան բան լսելն էլ մի բան է և անշուշտ արժէքաւոր։ Ուստի եթէ ընդունենք նոյնիսկ, որ այս փոքրիկ հատորը ոչ թէ մի պատմութիւն է, այլ պարզապէս մի ժամանակագրական ցանկ, կամ, աւելի լաւ է ասել, ձայնանիշների, նուագարանների, երաժիշտների և սրանց հեղինակութեանց բառարանը, այդ էլ հերիք է, որ այս խնդրով հետաքրքրուողները ցանկանան կարդալ այս ձեռնարկը։

Դժբաղդաբար փոխադրութեան լեզուն ունի որոշ խորթ ու մթին արտայայտութիւններ, որոնք երևի բղխել են բնագրին հարազատ մնալու ձգտումից։

Բացի այս՝ ինձ թւում է, որ եթէ նմանօրինակ աշխատութեանց մէջ նկարներ պէտք է լինեն, ապա ոչ թէ երաժիշտների դիմանկարներն են լինելու, այլ նախ և առաջ այն խաղերի ու նուագարանների գծագրութիւնները, որոնց մասին խօսք է լինում գրքոյկում. և մենք գրեթէ ոչինչ չենք կարողանում պատկերացնել, որովհետև երբէք չենք տեսել մեր կեանքում, օրինակի համար՝ չինական կամ եգիպտական *կ ի ն գ* կամ *շ է շ է տ* գործիքները. այնինչ մի երաժշտութեան պատմութեան մէջ դրանք աւելի անհրաժեշտ էին, քան թէկուզ մի Վագների, մի Բախի դիմանկարները, ոչ միայն որովհետև սրանց այն էլ ծանօթ են բոլորին, այլ որովհետև այդ դիմանկարները վերջ ի վերջոյ մի առանձին նշանակութիւն չունին բուն գիտելիքի համար։

Գ. Ս. Մելիքեանը իւր փոխադրութեան կցել է հայ երաժշտութեան վերաբերեալ մի օգտակար յաւելուած, որը մի տեսակ լրացնում է այն թերին, որ Ռ. Ցուքսի ձեռնարկի մէջ զգալի էր։

Մ. Մատէնճեան

---

ԳՐԱԿԱՆ ՆՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Մեր աշխատակից Լէօն գրել վերջացրել է պատմական մի դրամա 5 գործող. «Վարդանանք» վերնագրով։ Նիւթը վերցրած է հինգերորդ դարի շարժումներից։

# Մամուլ

«Тифл. Лист.» թերթի № 14ում «Համբաւաբեր» շաբաթաթերթի մասին տպագրուած է հետևեալը.—

Կ. Հ. Բ. Ը-թիւնը վերջին ժամանակներս ընդարձակելով իւր գործունէութիւնը, հետզհետէ ընդունում է զուտ կուլտուրական հաստատութեան բնոյթ։ Եւ, գիտակցելով որ կարևոր է, ամենից առաջ կենդանի կապ հաստատել այն հասարակութեան հետ, որի մէջ նա պէտք է իրագործէ իւր խնդիրները, Ընկերութիւնը ձեռնարկեց հրատարակելու մի անկուսակից շաբաթաթերթ, նպատակ ունենալով թէ ծանօթացնելու իւր արծարծած խնդիրները և թէ տարածելու իւր կուլտուրական գաղափարները։ Սակայն, չցանկանալով թերթին տալ զուտ պաշտօնական օրգանի բնոյթ, Ընկերութիւնը ժողովրդականացնելու նպատակով նախագծել է լայն գրական-հասարակական ծրագիր, ի թիւս այլոց հարևան ազգերի կենցաղը ծանօթացնել հայ ընթերցող հասարակութեան։

«Համբաւաբեր»-ի նոր լոյս տեսած համարները իրենց բազմատեսակ նիւթերով և լրջութեամբ թողնում են շատ հաճելի տպաւորութիւն։

Շաբաթաթերթի մէջ մասնակցում են յայտնի գրական ոյժեր»։

---

# Համաշխարհային պատերազմը

Այս շաբաթուայ ընթացքում ֆրանս-անգլօ-բելգիական և ռուսաց արևմտեան ճակատների վրայ առանձին փոփոխութիւններ տեղի չեն ունեցել։ Շարունակւում էին մանր տեղային կռիւները, որոնք գլխաւորապէս թնդանօթաձգութեան կերպարանք էին կրում։

Սալոնիկի ճակատը շարունակում է ընդհանուր ուշադրութիւն գրաւել։ Դաշնակիցները իրանց լուրջ պատրաստութիւններն են առաջ տանում, իսկ նրանց դէմ կենդրոնանում են գերմանօ-աւստրիական, բուլգարական և թիւրք զօրքերը։ Ինչպէս երևում է, գերմանական դաշնակցութեան ուշադրութիւնը ներկայումս աւելի գրաւել է Ռումինիան, որ շարունակում է պահպանել չէզոքութիւն և դրանով խանգարում է գերմանական ծրագիրները։ Այդ պատճառով էլ Գերմանիան, դատելով լրագրական տեղեկութիւններից, աշխատում է ստեղծել այնպիսի պայմաններ, որոնք կը հարկադրեն Ռումինիային մասնակցել պատերազմին։

*Կ ո վ կ ա ս ե ա ն* ճակատի վրայ ռուս զօրքերը շարունակում են իրանց յաղթական առաջխաղացութիւնը։ Այս շաբթի ընթացքում Մանազկերտի շրջանում գործող ռուսական զօրքերը առաջացան մինչև Խնուս ու գրաւեցին այս քաղաքը, որ Էրզրումից հարաւ է գտնւում։ Միևնոյն ժամանակ ռուսական զօրքերը առաջացան և Թորթումի լճի ուղղանից ու գրաւեցին Դումլի-դաղ լեռնաշղթայի անցքը, որ Էրզրումից դէպի հիւսիս է գտնւում։ Այսպիսով մեր կովկասեան բանակն այժմ երեք կողմից պատել է Էրզրումը — հիւսիսից, արևելքից և հարաւից։ Մնում է տեսնել այսուհետև թէ ինչ կը ձեռնարկէ կովկասեան բանակը։ Էրզրումը չափազանց պինդ և ռազմական արուեստի նորագոյն միջոցներով ամրացրած մի բերդ է։ Նախընթաց պատերազմների մէջ (1828 և 1877 թ.) ռուսներին չէ յաջողուել վերցնել այդ բերդը։ Բայց այժմ մեր քաջարի զօրքերը ցոյց են տալիս, որ իրենց համար դժուարութիւնները գոյութիւն չունեն։ Ապացոյց՝ հէնց այս յաղթական արշաւանքը տարուայ այս ժամանակին, երբ Բարձր Հայքի՝ դեռ հնութիւնից հռչակուած դաժան ձմեռն է տիրում և ռուս զօրքը իր արշաւի ճանապարհին հարիւրաւոր սառած ասկեարներ է գտնում։

Թիւրքաց կառավարութիւնը, խօսելով իր պաշտօնական հաղորդագրութեան մէջ ռուսական յաջողութիւնների մասին Էրզրումի շրջանում, աշխատում է պակասեցնել այդ յաջողութիւնների նշանակութիւնը և խոստանում է շուտով յետ մղել ռուսներին։ Այս պաշտօնական յոխորտանքը, ի հարկէ, միայն մարդ խաբելու համար է։ Պատմութիւնը դեռ օրինակներ չունի, որ օսմանցի թիւրքերը յաղթած լինեն ռուսներին։

Ինչ էլ լինի, Էրզրումի շրջանում զարգացող գործողութիւններն այն հետևանքը կունենան, որ թիւրքերը Միջագետքի իրանց զօրքերի մի մասը ստիպուած կը լինեն ուղարկել դէպի Բարձր Հայք և այդպիսով անգլիական զօրաբանակը աւելի յաջողութեամբ առաջ կը տանէ իր գործողութիւնները Բաղդադի դէմ։

Պարսկաստանում ռուսական զօրքերը աստիճանաբար մօտենում են Քիրմանշահին։ Ներկայումս այս զօրաբանակի և Բաղդադի վրայ արշաւող անգլիական բանակի մէջ տարածութիւնը այնքան կարճացել է, որ սպասում են թէ դաշնակիցները շուտով կը միանան այդտեղ և պատուար կը հանդիսանան գերման-թիւրքական շարժման դէմ դէպի Իրանի սարահարթը։

# Արտաքին տեսութիւն

Անցեալ տեսութեան մէջ նկարագրուած էր այն չարաղէտ արկածը, որին պատերազմական բախտի բերմունքով, զոհ գնաց Չերնոգորիան։ Իր ընտանիքի հետ Ֆրանսիայի Լիօն քաղաքն

ուղևորուեց և Նիկոլայ Թագաւորը, Թողնելով Չերնոգորիան առանց ազգային իշխանութեան ներկայացուցիչների: Զօրքի մի մասը զինաթափ եղաւ, միւս մասի գրութիւնը անյայտ է: Եւ այսպիսով սլաւոնական երկու փոքրաթիւ երկիրներ—Սերբիան և Չերնոգորիան մնացին որբացած, զրկուեցին իրանց թագաւորներից և զօրքերից, որոնք հիմա օտար հողերի վրայ են սպասում աւելի լաւ օրերի: 1876—1877 Թուականներին այս երկու պետութիւններն էլ կռուել են Բուլղարիայի ազատութեան համար և այսօր ընկնում են հէնց իրանց ազատածի դաւաճան հարուածներից:

Անգլիական պարլամենտն ընդունեց պարտադիր զինուորական ծառայութեան օրինագիծը: Այս օրինագծին սկզբունքի տեսակէտից հակառակ էր անգլիական բանուորութիւնը և ոմանց Թւում էր, Թէ ազգերի այս մեծ ճգնաժամի միջոցին Անգլիայում կառաջանան ներքին խռովութիւններ, որոնք և Թոյլ չեն տայ Անգլիային աւելի ուժեղ կերպով կազմակերպուելու հակագերման պատերազմի մէջ: Սակայն անգլիական բանուորութիւնը ցոյց տուեց, որ ինքն էլ շատ լաւ գիտէ իր հայրենիքը պաշտպանել և միլիոնաւոր ստորագրութիւններով վաւերացրեց կառավարութեան այդ ձեռնարկութիւնը իբրև մոմենտի հրամայողական պահանջ: Եւ Մեծ Բրիտանիան, յենուելով այդ օրինագծի վրայ, կաշխատի շուտով պատերազմի դաշտ հանել մի նոր ահարկու բանակ:

Անգլիական արտաքին գործերի մինիստր Գրէյը պարլամենտական ամբիոնից յայտարարեց, Թէ Անգլիան պիտի աւելի խիստ միջոցներ ձեռք առնէ, որ կենսամթերքներ չը մտնեն Գերմանիա: Կարծես այդ յայտարարութեան պատասխանն էր, որ գերմանական «Ցեպելլին» օդանաւերը արշաւեցին Անգլիա և Պարիզ, բազմաթիւ ռումբեր վայր գցեցին և սպանեցին ու վիրաւորեցին մի քանի տասնեակ անմեղ մարդիկ: Այսպիսի միջոցներով, ի հարկէ, ոչինչ շահել չէ կարելի: Բայց այդ «քաջագործութիւնները» ցոյց են տալիս, Թէ որքան շատ է գերմանական դաժան խստասրտութիւնը: Մի անմիտ և վայրենի հաճոյք նոյնիսկ անզէն մարդկանց, երեխաներ ու կանայք կոտորելու—ահա ինչ է ցուցադրում քաղաքակիրթ մարդկութիւնը ներկայ զարհուրելի պատերազմի մէջ:

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

Կ. Հ. Բ. Ը-թեան Դիլիջանի ճիւղի վարչութիւնը շնորհակալութեամբ ըստացաւ Վլադիկաւկազի հայ կանանց կոմիտէից 368 կտոր զանազան իրեր՝ շապիկ, կօշիկ, վերարկու և այլն՝ շրջանիս հայ փախստականներին բաժանելու համար: Իրերը բերել էր կանանց կոմիտէի լիազօրուհի՝ Եղ. Տէր Յովհաննիսեանը մինչև Ղարաքիլիսա և հասցրել Դիլիջան: Իրերը բաժանուած են արդէն:

Ստացուած է Կ. Հ. Բ. Ընկ. Խորհրդի Նախագահ Ս. Ո. Յարութիւնեանի միջոցով Տ. Սարգսեանից 210 ր. անցեալ ամառ Դիլիջանում կազմակերպած «Чашка чай»-ից մնացած զուտ օգուտը:

## ՊՈՍՏԱՐԿՂ

ՎԱՂԱՐՇԱՊԱՏ. Յ. Պետրոսեանին.—Շնորհակալութիւն: Ձեզ ուղարկւում է «Համբաւաբերը»:

Հ. ՆԱԽԻՋԵՒԱՆ.—«Համբաւաբերը» ունի գիտական, բայց ոչ մասնագիտական բաժին:

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

## Յայտարարութիւններ

ՅԱՒԵԼՈՒԱԾ № 5

# „ՀԱՄԲԱՒԱԲԵՐ"-Ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ԱՊԱՍՏԱՐԱՆՆԵՐԻ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

### ԴԻԼԻՋԱՆԻ II ԱՊԱՍՏԱՐԱՆ

(Շարունակութիւն)

| №№ | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդավայր | Տարիքը | Ծնող կամ մօտ ազգ. | Ծնողների տեղը | Գրագէտ | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|---|
| 248 | Տիգրանեան Մելքոն | Սեան | 11 | մայր | Իգդիր | ոչ | |
| 249 | Տիգրան | — | 2½ | — | — | — | |
| 250 | Փոխանեան Ազնիւ | Արջակ | 14 | ունի | — | ոչ | |
| 251 | Փոխանեան Նոյեմզար | » | 13 | » | — | այո | |
| 252 | Փոխանեան Թագուհի | Բոիլ | 18 | չունի | — | ոչ | |
| 253 | Փորոյեան Հայկանուշ | Ալճուազ | 10 | չունի | — | ոչ | |
| 254 | Փանոսեան Զօհրապ | Վան | 10 | ունի | Զիբուխչի | ոչ | |

### ԴԻԼԻՋԱՆԻ III ԱՊԱՍՏԱՐԱՆ

| №№ | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդավայր | Տարիքը | Ծնող կամ մօտ ազգ. | Ծնողների տեղը | Գրագէտ | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Արտաշէս Յովհաննիսեան | Լիզ | 15 | չունի | անյայտ | այո | |
| 2 | Աբրահամ Վարդանեան | Ալջավազ | 13 | — | — | » | |
| 3 | Ասատուր Պետրոսեան | Մուշ | 13 | — | — | » | |
| 4 | Անդրանիկ Թերլոյեան | Յողունք | 13 | — | — | » | |
| 5 | Ասծատուր Օհանեան | Հայոց-Ձոր | 13 | — | — | » | |
| 6 | Առաքել Գէորգեան | Սուլթանլու | 12 | — | — | » | |
| 7 | Առաքել Միսաքեան | Մուշ | 12 | հայր-մ. | Ալէք.Թոք. | » | |
| 8 | Ալէքսան Հարութեան | Ախլաթ | 11 | — | — | » | |
| 9 | Ազիզ Մխիթարեան | Խօշգելդի | 14 | — | — | » | |
| 10 | Աւետիս Նահապետեան | Ալջավազ | 12 | — | — | » | |
| 11 | Գէորգ Պարոնիկեան | Վան | 15 | մայր | անյայտ | » | տեղ.ծխ.դպ.V բ. |
| 12 | Գուրգէն Աճէմեան | » | 13 | » | Երևան | » | |
| 13 | Գառնիկ Խաչատրեան | Արճակ | 14 | — | — | » | |
| 14 | Գաբրիէլ Աւետիսեան | Հայոց-Ձոր | 14 | — | — | » | |
| 15 | Գեղամ Գրիգորեան | Արճէշ | 14 | — | — | » | |
| 16 | Գեորգ Կարապետեան | Կառկառ | 14 | — | — | » | |
| 17 | Գրիգոր Բարսեղեան | Վան | 12 | — | — | » | |
| 18 | Գրիգոր Պետրոսեան | Գաւաշ.պախ. | 13 | հայր-մ. | անյայտ | » | |
| 19 | Գէորգ Ասատուրեան | Մուշաշէն | 11 | — | — | » | |
| 20 | Դանիէլ Դասպարեան | Թիմար.վառ. | 15 | — | — | » | |
| 21 | Զաքար Թորոսեան | Բուլանըղ | 13 | մայր | » | » | |
| 22 | Թորոս Մարգարեան | Սեան | 13 | մայր | անյայտ | » | |
| 23 | Խաչատուր Պօղոսեան | Գաւաշ.Մուխ. | 14 | » | » | » | |
| 24 | Ղազարոս Կիւլանեան | Հայոց-Ձոր | 12 | — | — | » | |
| 25 | Ղուկաս Խաչիկեան | Ալջավազ | 12 | » | Էջմիածին | » | |
| 26 | Ղուկաս Օհանեան | Մեծք | 14 | — | — | » | |
| 27 | Մուրատ Համբարձումեան | Վան | 14 | հայր-մ. | Նոր-Բայ. | » | |
| 28 | Միսաք Ղազարեան | Գաւաշ | 12 | — | — | » | |
| 29 | Մուշեղ Գեորգեան | Սուլթանլու | 13 | — | — | » | |
| 30 | Մելքոն Յարութիւնեան | Խոշգելդի | 13 | հայր | Զպուխլու | » | |

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 31 | Մանուկ Տոնոյեան | Կոփ | 14 | — | — | այո | |
| 32 | Մեսրոպ Աբրահամեան | Տապաւանք | 13 | — | — | » | |
| 33 | Մխիթար Գրիգորեան | Լիզ | 13 | — | — | » | |
| 34 | Մերուժան Եղիազարեան | Էրզրում | 13 | մայր | Ալէքսան. | » | հիւանդ է |
| 35 | Յակոբ Մկրտչեան | Վան | 12 | — | — | » | |
| 36 | Յարութիւն Վարդանեան | Շատախ | 12 | — | — | » | |
| 37 | Յարութ. Մելիքեան | Ալգաւազ | 12 | հ.-մայր | անյայտ | » | |
| 38 | Յովհաննէս Յարութիւնեան | Դուաշ | 13 | մայր | Էջմիածին | » | |
| 39 | Ներսէս Գէորգեան | Խօշգէլդի | 11 | մայր | Ջիպուխլու | » | |
| 40 | Սարգիս Աճէմեան | Վան | 11 | » | » | » | |
| 41 | Սամսոն Թայիրեան | Լիզ | 14 | մայր | Դիլիջան | » | |
| 42 | Սարգիս Վարդանեան | Գուաշ | 14 | — | — | ոչ | |
| 43 | Սարգիս Մուրատեան | Փշավանց | 14 | — | — | » | |
| 44 | Սահակ Գալուստեան | » | 13 | մայր | անյայտ | ոչ | |
| 45 | Սերոբ Սեդրակեան | Ալգաւազ | 13 | — | — | » | |
| 46 | Ռուբէն Յարութիւնեան | » | 11 | մայր | » | » | |
| 47 | Վահան Համբարձումեան | Արճէշ | 12 | — | — | » | |
| 48 | Վարդան Գաբրիէլեան | Վան | 12 | — | — | » | |
| 49 | Վարագդատ Տիգրանեան | » | 13 | — | — | » | |
| 50 | Փանոս Սարգսեան | Ալգաւազ | 13 | մայր | Դիլիջան | » | |

## ԴԻԼԻՋԱՆԻ IV ԱՊԱՍՏԱՐԱՆ

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Ամիրխանեան Նուարդ | Փիռն | 8 | չունի | — | ոչ | |
| 2 | Աւետեան Վարսենիկ | Վան | 10 | հայր | Վան | » | |
| 3 | Աբրահամեան Պայծառ | Դապաւինչ | 10 | չունի | — | » | |
| 4 | Ալոյեան Սրմէ | Մուտան | 6 | » | — | » | |
| 5 | Աւետիսեան Սիրվարդ | Լիճ | 14 | » | — | » | |
| 6 | Աւետիսեան Դանիէլ | Արտոմիւր | 13 | » | — | այո | |
| 7 | Ալէքսանեան Միհրան | Մանազկերտ | 8 | հայր | Երևան | ոչ | |
| 8 | Ասատուրեան Միսաք | Ախլաթ | 13 | չունի | — | » | |
| 9 | Ալէքսանեան Մկրտիչ | Մանազկերտ | 12 | հայր | Երևան | այո | |
| 10 | Բարսեղեան Սինամ | Արտաւազ | 12 | մայր | » | ոչ | |
| 11 | Գէորգեան Ալմօ | Ջեչան | 10 | չունի | Էջմիածին | » | |
| 12 | Գէորգեան Հայկանուշ | Վան | 11 | հայր | Երևան | » | |
| 13 | Գէորգեան Զապէլ | » | 4 | » | » | » | |
| 14 | Գարեգինեան Յովհաննէս | » | 12 | » | » | այո | |
| 15 | Գարեգինեան Մկրտիչ | » | 9 | » | Էջմիածին | ոչ | |
| 16 | Գաբրիէլեան Մարտիրոս | Կիւրծոտ | 12 | չունի | — | » | |
| 17 | Գասպարեան Գարեգին | Փիռնք | 13 | հայր | Ալէքսան. | » | |
| 18 | Դաւթեան Թէմուր | Կարած-քար | 3 | չունի | — | » | |
| 19 | Եղիազարեան Հայաստան | Խարակոնդ | 16 | չունի | — | այո | |
| 20 | Եղիազարեան Մկրտիչ | Մուշ | 9 | մայր | Ալէքսան. | ոչ | |
| 21 | Զարոյեան Փերսաբէ | Խատաղլի | 13 | հայր | Կամար | » | |
| 22 | Թորոյեան Գեղամ | Մանազկերտ | 13 | ունի | Ալէքսան. | ոչ | |
| 23 | Իվանեան Աննա | Տնլոյող | 10 | չունի | — | » | |
| 24 | Իկիտեան Զլղաթ | Խոշկեալդի | 13 | մայր | Ջիբուխլու | » | |
| 25 | Խուլոկեան Սուքար | Արտաւազ | 10 | չունի | — | » | |
| 26 | Խաչատրեան Թովմաս | Պալօնի | 10 | » | — | » | |
| 27 | Խօչեցեան Միսաք | Բիթլիս | 12 | հայր | Բաթում | » | |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 28 | Ծիջոյեան Ղուրիկ | Ճաւճ | 12 | ունի | գերի են | » |
| 29 | Ծիջոյեան Սաղլու | » | 15 | » | » | » |
| 30 | Կարոյեան Պաղտագիւլ | Ղասմ | 12 | մայր | Թիֆլիս | » |
| 31 | Կարապետեան Սրապ | Թէղուտ | 8 | չունի | — | » |
| 32 | Կարոյեան Մուշեղ | Մանազկերտ | 13 | ունի | Ալէքսան. | » |
| 33 | Կիւրեղեան Փոխան | Գզլդաղ | 16 | չունի | — | այո |
| 34 | Կարապետեան Պօղոս | Ակն | 8 | » | — | ոչ |
| 35 | Համբարձումեան Արմենակ | Ախալքալաք | 11 | ունի | Ղարս | » |
| 36 | Ղազարեան Շուշան | Նարեկ | 7 | չունի | — | » |
| 37 | Ղազարեան Գէորգ | Մոտք | 12 | » | — | » |
| 38 | Միքայելեան Ղազուլ | Յախրակ | 12 | » | — | » |
| 39 | Մինասեան Ծովինար | Խոշկեալդի | 12 | » | — | » |
| 40 | Մարտիրոսեան Աղաւնի | Վան | 10 | » | — | » |
| 41 | Մովսէսեան Վերգինէ | Դապալէն | 13 | » | — | » |
| 42 | Մովսէսեան Ագապի | » | 11 | » | — | » |
| 43 | Մարտիրոսեան Լիա | Նորգիւղ | 10 | » | — | այո |
| 44 | Մանուկեան Գեղանոյշ | Վան | 13 | » | — | » |
| 45 | Մկրտչեան Նազիկ | Փոխու | 12 | » | — | ոչ |
| 46 | Մխոյեան Սատաֆ | Խօշկերտ | 13 | » | — | » |
| 47 | Մարկոսեան Գաղուրտ | Վան | 10 | հայր | Վան | » |
| 48 | Միսաքեան Հայրիկ | Շատախ | 12 | չունի | — | այո |
| 49 | Մովսիսեան Արծրունի | » | 10 | » | — | » |
| 50 | Միսաքեան Մովսէս | Արգն | 8 | » | — | ոչ |
| 51 | Մարգարեան Հրանտ | Ուլթի | 3 | » | — | » |
| 52 | Մանուկեան Փայլակ | Արճ | 9 | » | — | » |
| 53 | Մկրոյեան Անգատ | Լոռու | 8 | » | — | » |
| 54 | Մանուկեան Համբարձում | Ս. Սահակ | 10 | » | — | » |
| 55 | Մատթէոսեան Կիւրեղ | Զօդան | 12 | » | — | » |
| 56 | Մանուկեան Գրիգոր | Խժիկ | 12 | մայր | Էջմիածին | » |
| 57 | Միսաքեան Յաբէթ | Փինիք | 12 | չունի | — | » |
| 58 | Մելոյեան Եղիշէ | Ատկոն | 12 | » | — | » |
| 59 | Մելոյեան Մուշեղ | » | 8 | » | — | » |
| 60 | Մեղպուրեան Յաբէթ | Վան | 10 | հայր | Երևան | այո |
| 61 | Մեղպուրեան Եղիշէ | » | 12 | » | " | » |
| 62 | Մարտիրոսեան Խաչատուր | » | 12 | չունի | — | » |
| 63 | Մարտիրոսեան Յովհաննէս | » | 9 | » | — | ոչ |
| 64 | Յարութիւնեան Մաքրուհի | Կեավալ | 12 | մայր | Պարսկաս. | » |
| 65 | Յարութիւնեան Աղաւնի | » | 13 | » | » | » |
| 66 | Յովհաննիսեան Մայրիկ | Վան | 6 | չունի | — | » |
| 67 | Յովսէփեան Նանիկ | Մուտան | 9 | » | — | » |
| 68 | Յարութիւնեան Լուսիկ | Խափ-ձոր | 10 | » | — | » |
| 69 | Յովսէփեան Կիւլիզար | Մանդան | 13 | » | — | » |
| 70 | Յովհաննիսեան Սիրանոյշ | Վան | 12 | » | — | այո |
| 71 | Յովհաննիսեան Մանուկ | Մաշտակ | 9 | » | — | ոչ |
| 72 | Յովսէփեան Աւետիս | Մանդան | 12 | հայր | անյայտ | ոչ |
| 73 | Յովսէփեան Ազատ | Վան | 8 | չունի | — | » |
| 74 | Յակոբեան Ղազար | Խժիկ | 15 | » | — | այո |
| 75 | Յարութիւնեան Մուշեղ | Մուշ | 11 | » | — | » |
| 76 | Նշանեան Հրանոյշ | Վան | 10 | հայր | Երևան | » |
| 77 | Նազարեան Ումիրատ | Մուշ | 14 | չունի | — | ոչ |
| 78 | Շահեան Սաթենիկ | Խեչապ | 11 | » | — | » |
| 79 | Շուկրոյեան Մանուկ | Լոռու | 6 | » | — | » |
| 80 | Շուկրոյեան Գասպար | » | 9 | » | — | » |
| 81 | Պետրոսեան Աղաւնի | Բիթլիս | 14 | » | — | » |
| 82 | Պօղոսեան Սիրանոյշ | Վան | 7 | հայր | անյայտ է | » |
| 83 | Պետրոսեան Մաքրուհի | Շատախ | 12 | հայր | Էջմիածին | » |
| 84 | Պօղոսեան Եղիսաբէթ | Ախորիկ | 12 | մայր | Երևան | » |
| 85 | Պօղոսեան Մգրտիչ | Վան | 10 | հայր | անյայտ է | » |
| 86 | Պետրոսեան Արծրունի | » | 10 | չունի | — | այո |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 87 | Թուրինեան Աբրահամ | Խոշկալդի | 7 | չունի | — | ոչ |
| 88 | Սեդրակեան Ղազար | » | 11 | » | — | » |
| 89 | Սարգսեան Ատլաս | Արտաւազ | 14 | » | — | » |
| 90 | Սարգսեան Մամօ | » | 12 | » | — | » |
| 91 | Սահակեան Աղաւնի | Շատախ | 8 | մայր | Էջմիածին | » |
| 92 | Ստեփանեան Վաղինակ | Նիջ | 6 | » | — | » |
| 93 | Սարգսեան Արշաւիր | Վան | 13 | չունի | — | » |
| 94 | Սարգսեան Արշակ | Մանազկերտ | 13 | » | — | ոչ |
| 95 | Սեդրակեան Մալխաս | Դուրման | 12 | » | — | այո |
| 96 | Տիգրանեան Նորայր | Վան | 9 | հայր | Էջմիածին | ոչ |
| 97 | Օհանեան Սարգիս | Շատախ | 8 | մայր | Դիլիջան | » |

## ԴԻԼԻՋԱՆԻ V ԱՊԱՍՏԱՐԱՆ

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 1 | Աւետիսեան Սեդրակ | Կարճկան | 11 | մայր | Նաֆթւան | ոչ |
| 2 | Աւետիսեան Աննա | » | 11 | հայր | Պոլիս | այո |
| 3 | Աւետիսեան Շողեր | » | 10 | հայր | Նաֆթւան | ոչ |
| 4 | Աւետիսեան Եարմելա | Շատախ | 6 | ոչ | — | — |
| 5 | Աւետիսեան Զենօ | » | 7 | ոչ | — | — |
| 6 | | | | | | |
| | Գէորգեան Վարդան | Անտու | 7 | չունի | — | — |
| 7 | Գէորգեան Սինէ | » | 10 | » | — | — |
| 8 | Գէորգեան Ինկլիզ | Կարճկան | 12 | ունի | Նաֆթւան | ոչ |
| 9 | Գալստեան Անթառամ | Թաղա | 10 | չունի | — | — |
| 10 | Գալստեան Զինէ | Շատախ | 7 | ոչ | — | — |
| 11 | Գալստեան Պայծառ | » | 8 | ոչ | — | — |
| 12 | Թովմասեան Խաչատուր | Խակէն | 8 | չունի | — | — |
| 13 | Խորէնեան Շուշան | Խարակօն | 10 | ունի | Նաֆթւան | ոչ |
| 14 | Խաչատրեան Կինօ | Մամրտունց | 6 | մայր | (» | ոչ |
| 15 | Խաչատրեան Արշակ | Սորան | 9 | չունի | — | — |
| 16 | Կազարեան Յովսէփ | Գոմս | 8 | ունի | Նաֆթւան | ոչ |
| 17 | Կարապետեան Հռիփսիմէ | Կարճկան | 9 | չունի | — | — |
| 18 | Ղազարեան Նշան | » | 10 | » | — | — |
| 19 | Ղուկասեան Միրջան | » | 12 | » | — | — |
| 20 | Մովսիսեան Ղազար | Ընձակ | 8 | մայր | Էջմիածին | ոչ |
| 21 | Մովսիսեան Վարդան | Կարճկան | 9 | մայր | Նաֆթւան | ոչ |
| 22 | Մուշեղեան Աւետիս | » | 8 | չունի | — | — |
| 23 | Մանուկեան Կումաշ | » | 13 | ունի | Նաֆթւան | այո |
| 24 | Մկրտչեան Ռեբեկա | » | 11 | չունի | — | — |
| 25 | Մովսիսեան Զարէ | » | 11 | չունի | — | — |
| 26 | Մովսիսեան Կազաւ | » | 10 | ունի | Նաֆթւան | ոչ |
| 27 | Մանուկեան Նուպար | » | 9 | ունի | » | այո |
| 28 | Մովսիսեան Պայծառ | Պատակաց | 8 | մայր | » | ոչ |
| 29 | Մուրատեան Եղիսաբէթ | Կարճկան | 7 | ունի | » | ոչ |
| 30 | Մանուկեան Կազաւ | » | 8 | մայր | » | ոչ |
| 31 | Մովսիսեան Մարգարիտ | Կարճկան | 5 | չունի | — | — |
| 32 | Մելքոնեան Մարգարիտ | » | 5 | չունի | — | — |
| 33 | Մովսիսեան Զուբէ | » | 6 | չունի | — | — |
| 34 | Յարութիւնեան Սելան | » | 11 | չունի | — | — |
| 35 | Յարութիւնեան Թարկուլ | Նորդուզ | 10 | չունի | — | — |
| 36 | Յակոբեան Մարգարիտ | Կարճկան | 10 | ունի | Նաֆթւան | ոչ |
| 37 | Յարութիւնեան Լիլօ | » | 5 | չունի | — | — |
| 38 | Յարութիւնեան Կարապետ | Թուղա | 6 | չունի | — | — |

(Կը շարունակուի)

Տպ. Ն. Աղանեանի